


# Ե՞ՐԲ ԵՆ ՄԱՅՐԵՐԸ ՈՒՐԱԽԱՆՈՒՄ

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Ե՞րբ են մայրերն ուրախանում.
— Քո առաջին «մայրիկ» բառից
Եվ քայլերից քո առաջին,
Երբ մոր աչքին
Մանուկն ասես ճակայանում,
Բռնում է մեծ կյանքի ուղին...

Ե՞րբ են մայրերն ուրախանում.
— Երբ ամենուր որդիները
Մի լավ, բարի գործ են անում.
Նրանց տրված անունը պարզ
Հետզհետե մեծանում է,
Անմահանում...

Ինչ հրաշքներ
Որ կատարեն որդիները,
Ողջունում են մարդիկ մորը:
Ո՞վ է կերտել այս կոթողը,
Միևնույն է, մեկի որդին,
Եվ փառք մորը...
Եվ ի վերջո,
Ե՞րբ են մայրերն ուրախանում,
Երբ զվարթ են որդիները՝
Տանը, նաև ողջ աշխարհում...

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՆՎԵՐԸ

ԳՐԻԳՈՐԻ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Ես մի մեծ գաղտնիք ունեի, մի այնպիսի գաղտնիք, որի մասին մեկնումեկին չասելը ուժերիցս վեր էր:

Որոշեցի պատմել Վասկային:

— Դու գաղտնապահ ե՞ս,— հարցրեցի նրան մեծ դասամիջոցին:

— Դա էլ հա՞րց է:

— Բերանբացություն չե՞ս անի:

— Գերեզմանի պես լուռ կմնամ,— պատասխանեց Վասկան:

Ես աչք ածեցի շուրջս, տեսնելու մեզ մեկնումեկը չի՞ լսում: Վասկան էլ, համենայն դեպս, նայեց աթոռի տակ:

— Որոշել եմ մարտի 8-ի առթիվ նվեր անել:

— Ի՞հ,— հուսախաբված քրթմնջաց Վասկան, ջնջոցը դեպի անկյունը նետելով,— դա ի՞նչ մի գաղտնիք է որ... ո՞ւմ:

— Վերային:

Վասկան զարմանքից բացեց բերանը:

— Ես էլ եմ նրան նվեր տալու:

Այժմ էլ իմ բերանը բաց մնաց:

— Քո կողմից դա խոզություն է, չե՞ս կարող դու էլ մի ուրիշին նվեր տալ:

— Դո՛ւ ուրիշին տուր,— պատասխանեց Վասկան:

Ուզում էի մի հատ հասցնել, բայց նա ասաց.

— Ի միջի այլոց, միայն դու չես այդպես խելացի: Միշան, Դիմիչը, Անդրյուխան էլ են նրա համար նվերներ պատրաստում: Միայն թե դա գաղտնիք է:

— Վերայի՞ն:

— Բա էլ ո՞ւմ:

— Գժվել են բոլորը,— ասացի ես և մատս պտտեցրի քունքիս մոտ:

— Իսկ դո՞ւ,— նույնը անելով, հետաքրքրվեց Վասկան:

— Դե, ես ուրիշ...

Մենք լռեցինք:

— Ընդհանրապես նվեր տալը մի ամբողջ գիտություն է,— որոշեցի այլ կողմից մոտենալ հարցին,— գիտե՞ս որն է ամենադժվարը:

— Դրամ ճարե՞լը: Գնե՞լը:

Ես կարեկցանքով նայեցի նրան:

— Հապա ի՞նչը:

— Մտածելը, հասկացա՞ր:

— Ի՞նչ կա մտածելու,— անփույթ առարկեց Վասկան,— ինչ նվիրես, այն էլ լավ է: Նվիրած ձիու ատամներին չեն նայում:

— Դու կարող ես միայն տուն-տուն խաղալ, ոչ թե նվերներ տալ:

— Լավ,— ասաց Վասկան,— դեռ կտեսնենք, թե ում նվերը ամենալավը կլինի:




— Կտեսնենք,— ասացի ես, և գնացինք դասի:

Հեշտ է ասելը: Հակառակի պես, երբ հարկավոր է, գլխումդ ոչ մի պայծառ միտք չի ծագում: Ես փորձում էի հիշել, թե ընդհանրապես ինչպիսի նվերներ են անում: Մտածեցի, մտածեցի, բան դուրս չեկավ: Ելա փողոց, մտքերս մի քիչ ցրելու: Եվ հանկարծ տանիքի վրա նեոնային մի ռեկլամ տեսա՝ «Գիրքը ամենալավ նվերն է»:

«Եվ իրոք,— ուրախացա ես:— Ի՞նչ վատ նվեր է: Գիրքը նվիրելիս նրա վրա մի համապատասխան էլ մակագրություն կանեմ»:

Ես շրջվեցի և հարևան պատին մի պլակատ տեսա. «Ծաղիկը ամենալավ նվերն է»:

# Ծաղկեփունջ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Նկ. ՎԱՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

— Դաշտի՛ ծաղիկներ,
Ծաղիկնե՛ր գարնան,
Դուք այսքան երկար ինչո՞ւ եք քնում.
Դուք մայրիկ չունե՞ք,
Չգիտե՞ք միթե,
Որ մայրիկների տոնն է մոտենում:
— Լա՛վ նայիր չորսդին՝
Արթնացել ենք մենք,
Զարդարել կուրծքը հարազատ մեր մոր:
Բայց փոքրիկ ենք դեռ,
Թաքնվել ենք մենք
Թփուտների տակ, խոտերի մեջ չոր...—
Մի աղջիկ նայեց
Փոքրիկ թփի տակ՝
Մանուշակները ժպտացին կապույտ:
Իսկ քարի կողքին,
Խոտով ծածկված,
Ձնծաղիկներ են՝ ձյան նման մաքուր...

«Այնուամենայնիվ ո՞րն է ամենալավ նվերը՝ գի՞րքը, թե՞ ծաղիկը»:

Մտքերի մեջ խորասուզված, ես մեքենաբար իջա մայթից և քիչ մնաց կպչեի ավտոբուսին, որի կողքին մեծ տառերով գրված էր՝ «Էստամպը ամենալավ նվերն է»:

«Դե սա արդեն խայտառակություն է,— վրդովվեցի ես,— մեկ՝ ոչինչ, մեկ էլ՝ ամեն ինչ»:

Տուն վերադարձա լրիվ գլուխս կորցրած: Այդպիսի դեպքերում սովորաբար դիմում եմ հորս: Նա ամեն ինչ գիտե:

— Հայրի՛կ,— ասացի ես,— ինչպիսի՞ նվեր առնեմ, որպեսզի ամենալավը լինի:

— Ո՞ւմ:

— Դե դա կարևոր չէ: Ընդհանրապես:

— Շատ կարևոր է,— առարկեց հայրս,— եթե ցանկանում ես, որ նվերը ամենալավը լինի, հարկավոր է նկատի առնել այն մարդու անհատականությունը, ում նվիրում ես:

— Դե... մեր դասարանի աղջիկներից մեկին՝ Վերային:

— Հասկանալի է,— ասաց հայրիկս,— իսկ նա ինչպիսի՞ն է:

— Սովորական աղջիկ է, ոչ մի առանձնահատկություն չունի... միայն գեղեցիկ է:

— Այդպե՜ս, այդպե՜ս,— ասաց հայրիկս,— է՞լ ինչ կարող ես ասել նրա մասին: Ինչո՞վ է հրապուրվում: Ի՞նչ է սիրում:

— Ես ի՞նչ գիտեմ... Նա Թզուկ անունով մի շնիկ ունի: Ա՛յ, նրան ուղղակի պաշտում է:

— Ինչպիսի՞ շուն է:

— Ոնց որ քզեզ լինի: Չորս թաթերով տեղավորվում է ափի մեջ...

Հայրիկս մի փոքր լռեց՝ խոսքեր էր փնտրում:

— Իսկ այդ աղջկա նկատմամբ ինչ-որ բան տածո՞ւմ ես:

— Իսկ ի՞նչ բան է տածելը:

— Ինչպես ասեմ, որ հասկանալի լինի... համակրո՞ւմ ես նրան:

— Հը՞մ: Ընդհանրապես նրանից դժգոհ չեմ: Նա չարախոս չէ, բամբասկոտ չէ:

— Եվ միա՞յն: Իսկ ինչո՞ւ ես ուզում նվեր տալ:

— Սկզբունքորեն: Վասկան, Միշկան, Անդրեյը նույնպես նվիրելու են: Ես էլ եմ ուզում: Ո՞ւմը ամենալավը կլինի:

— Իսկ նա քեզ ինչպե՞ս է վերաբերվում,— հարցրեց հայրիկս:

— Կարծեմ ոչ մի կերպ:

— Այդ վատ է: Եթե հատուկ վերաբերմունք ունենար՝ ուրիշ: Իսկ այսպես...— Նա ձեռքերը տարածեց: — Կարծում եմ, քո շանսերը քիչ են:

— Իսկ ես կհակադրվեմ նրանց:

— Ինչո՞վ:

— Իմ գիտական մոտեցումով:

— Ի՞նչ նկատի ունես:

Ես անորոշ կերպով թափահարեցի ձեռքերս, դեմքիս տալով բազմանշանակ արտահայտություն:

— Դե, քեզ տեսնենք,— ասաց հայրիկս և ինձ միայնակ թողեց:

Որոշեցի իմ գիտական մոտեցումը սկսել ուղղագրական բառարանի ուսումնասիրությամբ: Գուցե բառերից մեկը նվերի մասին ինչ-որ միտք հուշի: Սկը-

սեցի բոլոր բառերը հերթով կարդալ:

— Աբաժուր... աբա... աբրնիատուրա,— հետաքըրքիր է, ի՞նչ բան է սա:—Անանաս... ասբեստ... բարբաջանք,— իրոք, ինչ-որ բարբաջանք:

Ես դարձյալ մի քանի էջ թերթեցի. «Գազ... գոգնոց...»

— Հենց ա՜յդ էր պակաս: «Գովասանագիր»: Ա՜յ, թե ես հասարակական կազմակերպություն լինեի, այդ դեպքում գովասանագիրը հարմար կլիներ,— գրամմոլեկուլ... բոլորովին մտքովս չէր անցնում, թե ուղղագրական բառարանը այսպիսի ծիծաղաշարժ գիրք է:

Բավական եղավ որպես նվեր պատկերացնեի հողահանը, նավթավառը կամ կինկիմորան, որպեսզի ծիծաղից խեղդվեի... «Գորտ... ռադիկուլիտ... բանաստեղծություն»: Ես փոթկացի ու հանկարծ անդրադարձա. «բանաստեղծություն»: Դե, իհարկե: Ահա՛ թե ինչը կարող է զարդարել յուրաքանչյուր նվեր: Միայն հարկավոր է իմ իսկ հորինած բանաստեղծությունը: Այդ մեկը հո ես կարո՛ղ եմ անել:

Ես թեթևացած շունչ քաշեցի: Համենայն դեպս զուր չանցավ իմ գիտական մոտեցումը:

...Եվ ահա եկավ Մարտի 8-ը: Ես սանրվեցի, հարդարվեցի և գնացի հյուր: Ուզում էի առաջինը ներկայանալ, չեղավ: Դասարանի գրեթե բոլոր տղաները եկել էին: Միայն Անդրեյը չկար: Կարմրած, հուզված Վերան ամեն օրվանից ավելի գեղեցիկ էր թվում: Միշան և Սերյոժան շփոթված կուչ էին եկել պատի տակ և խանդոտ նայում էին իմ փաթեթին: Դիմիչը ջանքեր էր անում դուր գալու Վերայի շնիկին՝ Թզուկին: Միայն Վասկան էր քիթը ցցած քայլում և ոտքից գլուխ փայլում պղնձե թասի նման: Երևի նրա նվերը մինչ այժմ եղածների մեջ ամենալավն էր:

«Ոչինչ: Տեսնենք հիմա՞ էլ կփայլես»,—մտածեցի ես, և փաթեթի միջից նվերը հանելով, արտասանեցի.

Այս նվերը, Վերա՛, քե՛զ,
Դու լավ պիոներ ես,
Եվ դուրեկան, սիրունատես,
Ու ես անկեղծ հարգում եմ քեզ:

Վասկան մի փոքր վհատվեց: Բոլորը տեսան, թե ինչպես Վերային դուր եկավ իմ բանաստեղծությունը:

— Սրա՞ն նայեք, գլխիս աշուղ է դարձել,— խայթեց Վասկան:

— Ես ավելի լավ տարբերակ ունեմ,— շարունակեցի ես:— Առաջին երկու տողերը նույնն են, հետո այսպես.

Ու ես անկեղծ հարգում եմ քեզ,
Որովհետև գեղեցիկ ես:

Վերան մինչև անգամ բաց թողեց Թզուկին և ծափահարեց: Վասկայի խումբը խամրեց:

Բայց և այնպես իմ նվերը ամենալավը չէր: Ես դա հասկացա Վերայի աչքերից, որոնք անսովոր կերպով փայլատակեցին, երբ հայտնվեց Անդրեյը:

Անդրեյը շնորհավորեց Վերային, հետո մոտեցավ Թզուկին և նրա վզից կախեց մի մեծ մեդալ, որի վրա գրված էր. «ԱՐՋԻՆ ՀԱՂԹԵԼՈՒ ՀԱՄԱՐ»:

Ես նայեցի Վերային, Անդրյուխային և մտածեցի. «Եթե երկու հոգի համակրում են միմյանց, թերևս ոչ մի գիտական մոտեցման կարիք չկա»:

Թարգմ. Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆԻ



«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1974 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց բանաստեղծ Ռազմիկ Դավոյանին՝ «Իմ ծառը», «Զրույց կախարդ պապիկի հետ», «Տխուր փիղը» բանաստեղծությունների համար:



«Խաղաղասեր փիղը», «Մրջյունները փրկվեցին», «Մտածո՞ւմ են արդյոք թութակները», «Սամուղրա» նյութերի նկարազարդման համար նկարիչ Աշոտ Բայանդուրը արժանացավ 1974 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:





# ՇՐՋԱԶԳԵՍՏԸ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Ալվարդը ցատկոտելով բակ վազեց.

— Տե՛ս,— ասաց Լևոնին,— ի՞նչ գեղեցիկ շոր ունեմ,— և ուրախ պտտվեց տեղում:

Լևոնը նայեց. իսկապես ծաղկավոր չթե շրջազգեստը սազում էր Ալվարդին: Այսինքն՝ նրանք այնքան քիչ էին նոր շոր հագնում, որ ինչպիսին էլ լիներ, լավն էր երևում, և Լևոնը սրտանց գովեց.

— Շատ լավն է, շնորհավո՛ր,



— ասաց նա մեծերից լսածի պես:

— Շնորհակալ եմ,— նույնպես մեծերից լսածի օրինակով ասաց աղջիկը:

Ու նրանք սկսեցին խաղալ: Թաղի երեխաների սիրած խաղը՝ «կլասն» էր: Զնայած ծնողները հաճախ էին բարկանում, որ ոտքերը քարերով են տալիս, տրեխները մաշում, բայց լսողն ո՞վ էր:

— Էլի սկսեցի՞ք...— բակ դուրս գալով կշտամբեց Լևոնի մայրը:

— Վաղը դպրոց ենք գնալու,— հարցը չլսելու տալով, խոսեց Ալվարդը:— Տե՛ս, նոր շոր եմ հագել, Աստղի՛կ մորաքույր:

Լևոնի մայրը նայեց և ժպտաց.

— Շնորհավո՛ր, բալի՛կս...

Լևոնը նայեց իր ցնցոտի դարձած տաբատին, մայրն էլ էր նայում:

— Մա՛մ, ինձ համար էլ նոր շոր կարեք,— ասաց՝ կարծես հենց այնպես: Ինչպե՞ս կարեին: Վեց երեխա են, միայն հայրն է աշխատում:

Քիչ հետո բակը լցվեց ուրիշ երեխաներով: Ուրախ և անհոգ աղմուկի մեջ մոռացվեց և՛ վաղվա դպրոց գնալը, և՛ Ալվարդի նոր շրջազգեստը: Իսկ օրը մթնում էր:

— Ալվա՞րդ...



— Գուրգե՞ն...

— Պարո՞ւյր...

Տուն գնալու ժամանակն էր: Մայրիկները կանչում էին քնելու:

Լևոնը երբ տուն մտավ, հայրը բարկացած խոսում էր. «Թող դա մնա, ձեռք չտաս, երեխա է, մի բան կճարենք, կհագնի»: Մեծ քույրը տրտում նստած էր տան կենտրոնում դրված փոքրիկ սեղանի մոտ և գրքերն էր դասավորում: Նա էլ էր պատրաստվում առավոտյան դպրոց գնալու:

— Լա՛վ,— բարկացած ասաց հայրը,— ես գնացի, ինչ ուզում եմ՝ արա՛:— Եվ դուրս եկավ ու շուտով բակում լսվեց հենակների բութ թխկթխկոցը:

Հայրը կոլտնտեսության կալերի պահակն էր, հսկում էր ցորենի դեզերը:

Հոր գնալուց հետո երկար ժամանակ ոչ ոք չէր խոսում: Քույրը վերջապես կտրեց լռությունը:

— Հանվի՛ր, լվացվի՛ր և պառկի՛ր քնելու,— գորովանքով եղբոր մազերը շոյեց նա: Տանը բոլորը շատ էին սիրում իրեն: Տան միակ տղա պավակն էր: Մեծ եղբայրը վաղուց մահացել էր, ու նրա փոխարեն հիմա կրկնակի քնքշանքով էին շրջապատում իրեն:

Չհակառակեց քրոջը: Փայտե տաշտակում լվաց ոտքերը և լուռ ու մունջ անկողին մտավ: Քունը չէր տանում: Լամպի լույսը վառ էր. մայրը ինչ-որ բան էր կարում մկրատով, խը՛րթ, խը՛րթ...

Առավոտյան շուտ արթնացավ: Բակում աշխույժ աղմկում էին դպրոցական երեխաները: Մայրը մոտեցավ.

— Հագնվի՛ր, որդի՛ս,— ասաց,— Ալվարդը քեզ է սպասում, դասից չուշանաք:

Մահճակալի մոտ, աթոռին դրված էին մուգ կապույտ կտորից մոր ձեռքով կարված տաբատ և վերնաշապիկ:

— Ի՞մն են,— տեսածին չհավատալով, դիմեց մորը:

— Հագի՛ր,— քույրը արագ վերցրեց վերնաշապիկը և օգնեց հագնելու...

...Բոլորի տրամադրությունը բարձր էր: Հյուր էր գալու քեռի Վարդանը: Մայրը փորձում էր սեղան պատրաստել: Ուր որ է, կերևար քեռին ու տունը կլցվեր նրա վնգուն ծիծաղով, կատակներով:

— Մայրի՛կ,— հանկարծ տեղից վեր թռավ Լևոնը:— Մայրի՛կ, իսկ ինչո՞ւ չես հագնում քեռու նվիրած շրջազգեստը, ախր նա շատ հավանեց, երբ առաջին անգամ հագար:

Մայրը չարձագանքեց, իսկ մեծ քույրը տխուր նայեց եղբոր միամիտ, ուրախությունից բոցկլտացող աչքերին:

— Հագի՛ր, մայրի՛կ ջան,— կարծելով մայրը չհասկացավ իրեն, կրկնեց Լևոնը: Քույրը մոտեցավ նրան և ցածրաձայն ասաց.

— Նայիր տաբատի՛դ և վերնաշապկի՛դ. չէ՞ որ մայրիկը քեռու նվիրած իր շրջազգեստը քանդեց և դրանք կարեց:

Լևոնը հիշեց այն երեկոյան լըսած հոր խոսքերը. «Թո՛ղ, դրան ձեռք չտաս, երեխա է, մի բան կըճարենք, կհագնի»: Իսկ ինքը այն ժամանակ չհասկացավ, թե ինչի մասին է խոսքը: Առավոտյան էլ չհարցրեց, թե որտեղից այս շորերը: Մայրիկը այդ շրջազգեստը մի անգամ էր հագել, այն էլ փորձելու, թե սազո՞ւմ է, հետո հանել էր ու պահել, ապիկ օրվա համար, դա նրա ապիկ օրվա՝ տոն օրվա շորն էր:

Այնքան ուրախություն պատճառած կապույտ տաբատն ու վերնաշապիկը միանգամից տխրությամբ լցրին սիրտը:

Բակում երեխաները աղմկեցին.

— Քեռին եկա՞վ, քեռին եկա՞վ...

Լևոնը հանցավորի նման դուրս փախավ տնից: Այլևս ինչպե՞ս երկար քեռու աչքին...

# ՄԱՐՇԱԼԸ ՈՂՋՈՒՆՈՒՄ Է «ՊԻՈՆԵՐ»-Ի ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ



ՀՈՎՀԱՆՆԵՍ ԲԱՂՐԱՄՅԱՆ
Սովետական Միության մարշալ

Յուրաքանչյուր տարվա հետ մենք ավելի ու ավելի հեռանում ենք սովետական ժողովրդի պատմության փառավոր տարեթվից՝ Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի օրվանից: Զբաղված լինելով խաղաղ ստեղծագործ աշխատանքով, մեր ժողովուրդը ամեն տարի հանդիսավոր տոնում է հաղթանակի օրը՝ մայիսի 9-ը:

Հաղթանակի օրը մեր ժողովրդի արիության և հերոսության, Մեծ հոկտեմբերի նվաճումների պաշտպանության անհերեր հաստատակամության խորհրդանիշն է: Հաղթանակի օրը մեր հրաշալի հայրենիքի բոլոր ժողովուրդների ազատության և եղբայրության տոնն է:

Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակը նոր էջ բացեց մարդկության պատմության համար: Անգնահատելի է Սովետական բանակի դերը մարդկությանը սպառնացող ֆաշիստական ստրկությունից ազատագրելու, Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում ժողովրդական իշխանության հաղթանակի գործում, որոնք այժմ հաջողությամբ սոցիալիզմ են կառուցում: Այդ պատճառով էլ հաղթանակի օրը սովետական մարդկանց հետ տոնում են աշխարհի ողջ առաջադեմ մարդիկ:

Հայրենական մեծ պատերազմում հաղթանակը ամուր հիմք՝ դարձավ կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի աշխատանքի համար: Հաղթանակի օրը սովետական մարդիկ ավանդաբար դիմավորում են աշխատանքային նոր հաջողություններով, ստեղծելով նոր քաղաքներ, գործարաններ ու ֆաբրիկաներ, դպրոցներ, գիտա-հետազոտական ինստիտուտներ և մշակութային կենտրոններ: Ուրախությամբ նշելով ժողովրդական տնտեսության, գիտության և մշակույթի փիթխարի հաջողությունները, սովետական ժողովուրդը է՛լ ավելի մեծ հարգանք է մատուցում բոլոր նրանց, ովքեր չխնայելով իրենց կյանքը, կռեցին մեր հաղթանակը:

Հայրենական մեծ պատերազմում ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի տարած փառավոր հաղթանակի առթիվ Հայաստանի պիոներներին և դպրոցականներին մաղթում եմ առողջություն, գերազանց ուսում, օրինակելի վարք, ակտիվ մասնակցություն «ՓԱՅԼԱԿ» ռազմա-հայրենասիրական խաղին, որպեսզի դառնաք կոմունիզմի լուսավոր շենքը կառուցող սովետական մարդկանց ավագ սերնդի արժանի հերթափոխ:

# ՆԿԱՐԻՉԸ ԵՎ ՖՈՒՏԲՈԼԻՍՏԸ

ԳՐԻԳՈՐ ՔԵՇԻՇՅԱՆ



Նկարիչը շատ զարմացավ, երբ տղաներին չտեսավ ֆուտբոլի դաշտում, որը բազմաթիվ ավտոտնակների, ցանկապատված հողատարածությունների արանքում շատ փոքր, նեղ ու երկարուկ, մի քիչ էլ ծուռ ու մուռ տարածություն էր: Այդ նեղվածքում տղաները առավոտից երեկո ֆուտբոլ էին խաղում: Եվ, պարզ է, անհանգստացնում էին ավտոտերերին, տնամերձատերերին, լվացք փռած տանտիկիններին և... նկարչին:

Նկարիչը ոչինչ չուներ ֆուտբոլիստ պատանիների դեմ: Նա նույնիսկ երբեմն կանգ էր առնում ու դիտում որևէ կոմբինացիայի ավարտը: Հայացքով կամ շարժումով քաջալերում նրանց:

Բայց անպիտան գնդակը մեկ էլ տեսար գա՜հ դիպչում էր արվեստանոցի լուսամուտին, ապակին փշուր-փշուր էր լինում մեծ աղմուկով, և գնդակը գլորվում և անտարբեր կանգ էր առնում նատյուրմորտերի, բնանկարների, դիմանկարների մեջտեղը: Նկարիչը անմիջապես դուրս էր վազում, բայց բակը դատարկ էր գտնում: Նա գիտեր, որ տղաների վախվորած աչքերը ինչ-որ ծակերից ու մուտքերից իրեն են նայում, բայց չէր գտնում նրանց ու, վերադառնալով, նկարելը մի կողմ թողած, զանգ էր տալիս իր ապակեգործ ծանոթին:



Սխալն այն էր, որ արվեստանոցն ու երեխաների ֆուտբոլի դաշտը նույն բարձրության վրա էին գտնըվում: Բայց քանի որ ոչ մի ճարտարապետ դեռևս չէր մտածել կտուրների վրա մարզադաշտ կառուցելու մասին, սխալը արվեստանոցինն էր: Հարված ստացած գնդակը պետք է անպայման հնազանդեր հարվածին: Նա չէր կարող նկատի ունենալ տանտիրուհու լվացքը, սեփական մեքենան, նկարչի արվեստանոցը: Այս բոլորի մեջ գնդակը անմեղ էր, հարվածող պատանին անմեղ էր, ապակին անմեղ էր: Եվ, պարզ է, հնարավոր չէր կտուրներին ֆուտբոլի դաշտ կառուցել:

Նկարիչը բակ մտավ ու զարմացավ տիրող անդորրից: Ամառային արձակուրդներին աներևակայելի բան էր անաղմուկ բակը: Նրա զարմանքն առավել մեծացավ, երբ բոլոր տղաներին տեսավ արվեստանոցի պատի տակ, իսկ գնդակը շատ անմեղ տեսքով՝ նրանց կողքին: Նկարիչը կասկածոտ նայեց ապակիներին, բայց և՛ կասկածը, և՛ հայացքը ավելորդ էին: Ապակի ջարդած ոչ մի երեխա չի նստում նույն լուսամուտի տակ ու տանտիրոջն սպասում: Ինչ-որ շատ լուրջ բան էր պատահել: Նկարիչը ուզեց հարցնել.

— Տղանե՛ր, ի՞նչ է պատահել:

Բայց չհարցրեց: Մինչ այդ տղաների հետ նա ոչ մի զրույց չէր ունեցել և դժվար էր միանգամից այդքան մտերիմ հարց տալը:

Դանդաղ բացեց արվեստանոցի դուռը: Հրաշալի կլիներ, եթե նրանք որևէ բան ասեին, բայց տղաները ոչինչ չասացին: Նրանց համար էլ, հավանաբար, դժվար էր միանգամից խոսել նկարչի հետ:

— Ինչո՞ւ չխոսեցիր,— ասաց տղաներից մեկը, երբ նկարիչը դուռը փակել էր:

— Դու խոսեիր, եթե այդքան քաջ ես,— միանգամից ջղայնացավ մյուսը:

— Կապիտանը դու ես, դու էլ պետք է խոսես:

— Առավոտվանից նըստած իրեն ենք սպասում: Արդեն ժամը տասն է:

— Իսկ ժամը մեկին խաղերը սկսվում են:

— Մեզ պարտություն կգրանցեն:

— Դե՛, վե՛ր կաց:

— Լավ,— ասաց կապիտանը,— ես ներս կմըտնեմ, դուք էլ՝ իմ ետևից:

— Դու էլ կխոսես:

— Բա էլ ո՞վ, եթե առաջինը ես եմ մտնում:

Նկարիչը պատրաստվում էր աշխատել, երբ դուռը անաղմուկ բացվեց: Նկարիչը նայեց ու դռան մեջ տեսավ կապիտանի կերպարանքը, որը մի քայլ արեց ու ետ նայեց: Եթե այդ պահին երկրորդ տղան ներս չմտներ, նա անպայման ետ կփախչեր, բայց ընկերը երևաց: Կապիտանը մի քայլ արեց, ետևից եկողը նույնպես առաջացավ, դռան մեջ երևաց երրորդը: Նկարիչը անշարժ, զարմացած, հետաքրքրությամբ նայում էր իրար ետևից ներս մտնող տղաներին: Երբ բոլորն արդեն արվեստանոցումն էին և վերջինը դուռը ետևից փակել էր, նկարիչը հարցրեց.

— Ի՞նչ կա, տղանե՛ր:



Կապիտանը գիտեր, որ ինքն էր պարտավոր պատասխանել: Բայց բոլոր բառերը փախել էին: Միակ բանը, որ նա կարողացավ անել այդ պահին, ֆուտբոլի գնդակը հատակին խփելն էր: Լուռ արվեստանոցում գնդակի ձայնը արձագանք տվեց, և կապիտանը այն անմիջապես բռնելով՝ սեղմեց կրծքին: Նկարիչը սպասեց, բայց երբ պատասխանը ուշացավ, նա ուզեց տղաներին քաջալերել:

— Սա իմ արվեստանոցն է,— ասաց նա,— սրանք իմ նկարներն են, ուզում եք նայե՞լ:

— Համարներ են պետք,— բառերը միանգամից եկան կապիտանի միտքը:

— Ինչ է պե՞տք,— նկարիչը չհասկացավ:

— Մեր մայկաները համարներ չունեն,— բացատրեց կապիտանը,— իսկ առանց համարների մեզ մրցումների չեն թողնում:

— Ի՞նչ մրցումներ,— հարցրեց նկարիչը:

— Ֆուտբոլի մրցումների:

— Իհարկե, ֆուտբոլի: Ո՞վ է խաղում:

Կապիտանը ակնհայտ զարմանքով նայեց նկարչին: Մի՞թե նա չգիտեր, որ բակային թիմերի մրցումներ էին գնում, որ իրենք պետք է առաջին տեղը գրավեին նաև շրջանային մրցումներում, ապա Երևանի առաջնությունում, մասնակցեին հանրապետական մրցումներին, որտեղ հաղթելուց հետո գնային համամիութենական մրցումներին: Եվ համարելով, որ յուրաքանչյուր մարդ այդ բոլորը պարտավոր էր իմանալ, նա սկսեց բացատրել վերջից.

— Համամիութենական մրցումները այս տարի Ալմա-Աթայում են անցկացվում: Այնտեղ մենք պետք է առաջին տեղը գրավենք:

— Դո՞ւք,— նկարիչը արագ հայացքը պտտեցրեց տղաների վրայով: Նա հիացած էր:— Որոշել եք առաջին տե՞ղը գրավել: Դա հրաշալի է: Բայց երևի շատ դժվար կլինի, հա՞:

— Դժվարն էլ խո՞սք է: Այնտեղ կլինեն բոլոր հանրապետությունների ուժեղագույն թիմերը:

— Իսկ դուք Հայաստանի ուժեղագո՞ւյնն եք:

Տղաները իրար նայեցին: Բոլորի փոխարեն խոսեց կապիտանը:

— Մենք անշուշտ բոլորից ուժեղ ենք, բայց խաղերը դեռ չեն սկսվել: Մեր առաջին մրցումը այսօր է:

— Այսօ՞ր:

— Այո՛:

— Հապա ինչո՞ւ չեք մարզվում: Այդ գործը, այսինքն՝ առաջին տեղը գրավելու գործը, այնքան էլ հեշտ չպետք է լինի, իմ կարծիքով:

— Շատ դժվար է,— մեծավարի խոսեց կապիտանը,— բայց մենք ուժեղ ենք:

— Ուրիշ ուժեղներ չկա՞ն: Պետք է լինեն,— ասաց նկարիչը:

— Անշուշտ կան, բայց մեզ նման ուժեղ չեն:

— Դա հրաշալի է: Ի՞նչ է ձեր թիմի անունը:

— «Փոթորիկ»:

— Շատ հարմար անուն է:— Նկարիչը իսկապես ոգևորված էր: Բայց նա հանկարծ լրջացավ:— Տղանե՛ր,— ասաց նա,— այսօր առաջին մրցումն է և դուք եկել եք նկարնե՞ր նայելու:

Կապիտանի դեմքը հիասթափություն արտահայտեց: Բայց նա իրեն զսպեց և մտածածը չասաց: Նա գիտակցեց, որ պետք էր ուրիշ բան ասել:

— Մեր մարզիչը հիվանդացել է,— ասաց նա,— այսօր մենք առանց նրան ենք դաշտ դուրս գալու: Առավոտյան գնացինք ու ներկայացանք, բայց նրանք ասացին, որ մեր մայկաները համարներ չունեն և մեզ մրցման չեն թողնի:

— Ուրեմն ի՞նչ պիտի անեք,— նկարիչը խոսեց մի քիչ գլուխը կորցրած,— պիտի առաջին տեղից հրաժարվե՞ք:

Տղաները խոսքի մեջ մտան միանգամից.

— Դրա համար էլ եկել ենք այստեղ:

— Օգնեցե՛ք մեզ:

— Ձեր ապակիները այլևս չենք կոտրի:

— Խոստանում ենք:

Նկարիչը տեղից վեր էր կացել, ու տղաները շրջապատել էին նրան:

— Սպասեցե՛ք, սպասեցե՛ք,— ասաց նա և աչքերը փայլեցին: Նա կարծես նույնիսկ միանգամից երիտասարդացել էր:— Ապակիները բոլորովին կարևոր չեն: Դուք ինձնից ի՞նչ եք ուզում, տղանե՛ր:

Աղմուկը միանգամից դադարեց: Եվ բոլորը նորից նայեցին կապիտանին: Նկարչի հայացքը նույնպես դարձավ կապիտանին:

— Ասա՛,— խոսեց նա:

Այս անգամ կապիտանը շատ արագ ու գործնական խոսեց.



Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՍԱՄՎԵԼՅԱՆԻ

— Մեր մայկաների վրա համարնե՛ր գրեցեք: Դուք նկարիչ եք, պետք է կարողանաք: Մենք փորձեցինք: Չհաջողվեց: Խոշոր թվանշան գրելը դժվար է: Դուք կարող եք:

— Ձեր մայկաների վրա՞: Ե՞րբ:

— Հիմա: Ժամը մեկին մենք մրցելու ենք:

— Այսօ՞ր: Ժամը մեկի՞ն:

— Այո՛:

— Արդեն ժամը տասնմեկն է,— նկարիչը արագ նայեց թևի ժամացույցին ու ասաց մտահոգ,— շատ ժամանակ կորցրինք: Սկսե՛նք:

— Համաձա՞յն եք, կգրե՞ք,— տղաների աչքերը փայլեցին:

— Հապա ինչպե՞ս: Ուզում եք իմ պատճառով առաջին տեղը կորցնե՞լ: Դե՛, սկսենք, ո՞վ է առաջին համարը, ո՞վ է դարպասապահը:

— Ես,— ասաց տղաներից ամենաերկարահասակը, առաջ գալով:

— Շո՛ւտ, մայկադ հանի՛ր:

Մինչ տղան մայկան էր հանում, նկարիչը ներկատուփից սև ներկ հանեց, մաքուր վրձին վերցրեց, անկյունի սեղանը ազատեց հազար ու մի անկարևոր պարագաներից ու իրերից:

— Ես պատրաստ եմ,— հայտարարեց նա՝ վրձինը բարձր պահած:

Դարպասապահը մայկան նրան մեկնեց: Նկարիչը մայկան փռեց սեղանին, վրձինը թաթախեց ներկի մեջ և բոլոր տղաների ու իր հիացական հայացքի տակ մայկայի վրա շատ արագ, խոշոր ու գեղեցիկ մեկ թվանշանը գրեց:

— Վերցրո՛ւ, բայց անմիջապես մի՛ հագիր,— ասաց նկարիչը դարպասապահին,— թող չորանա: Ա՛ջ պաշտպան, համար երկու, մայկադ տո՛ւր:

Աջ պաշտպանը արդեն պատրաստ էր: Նույն գործողությունը կրկնվեց և այս անգամ մայկայի վրա դրոշմվեց երկու թվանշանը:

— Հաջո՛րդը, համար երե՛քը,— բղավեց նկարիչը:

Տղաներից մեկը առաջ եկավ ու մերկացավ:

— Հաջո՛րդը...

— Հաջո՛րդը...

— Հաջո՛րդը...

— Երեք հոգի էլ պահեստային կա,— խոսեց կապիտանը:

— Համարները շարունակե՞մ:

— Շարունակեցե՛ք,— հրամայեց կապիտանը:

Արվեստանոցը շատ աղմկոտ ու կենդանի էր դարձել: Մեծ գործի եղող մարդկանց նման տղաները իրարանցումի մեջ էին: Աշխատանքը ավելի արագ էր ընթանում: Երկու տղա, երկու կողմից ձգում էին մայկան, իսկ նկարիչը ոգևորված համարներ էր գրում-նկարում:

— Վերջացա՞վ,— հարցրեց նա, երբ բոլորն արդեն մերկացել ու հագնվել էին:

— Վերջացավ,— ասաց կապիտանը,— մենք շատ շնորհակալ ենք:

— Գնո՞ւմ եք,— հարցրեց նկարիչը:

— Այո՛, ժամանակ չկա:

Տղաները դեպի դուռը ուղղվեցին: Մի քանիսը արդեն դուրս էին եկել, երբ նկարիչը հանկարծ կանչեց.

— Սպասեցե՛ք, սպասեցե՛ք, չէ՞ որ դուք առանց մարզիչի եք մնացել:

Կապիտանը զարմացած կանգնեց.

— Դուք ուզում եք գա՞լ,— հարցրեց նա:

— Հապա ինչպե՞ս: Բա ես իմ թիմի խաղը բաց կթողնե՞մ:

Դուրս եկածները գլուխները դռնից ներս էին մտցրել:

— Ուռա՛,— բղավեցին բոլորը,— ուռա՛...

— Դե՛, ուրեմն շտապենք, հագիվ կհասցնենք,— ասաց նկարիչը,— ես դուռը մի վայրկյանում կփակեմ:

Փողոցում ուղղակի հրաշալի տեսարան էր: Սպիտակող մազերով նկարիչը և սպիտակ մայկաներով տղաներ: Առջևից կապիտանն էր քայլում, ձեռքին ֆուտբոլի գնդակը, որը երբեմն խփում էր գետնին ու վարժ շարժումով բռնում: Մաքուր, սպիտակ մայկաների վրա գեղեցիկ գրված թվանշանների յուղաներկը փայլում էր արևի տակ:

Նրանք գնում էին մրցման: Նրանք գնում էին առաջին հանդիպմանը, բայց վստահ էին, որ առաջին տեղն էին գրավելու նախ շրջանում, հետո քաղաքում և հանրապետությունում, իսկ ավելի ուշ՝ նաև Ալմա-Աթայում:

Նրանցից ոչ մեկի հայացքում՝ այդ թվում նաև նկարչի, կասկածի նշույլ իսկ չկար: Իսկ ամենակարևորը այդ էր: Նրանք առաջին տեղը կարող էին գրավել: Անպայման:

# ԻՆՉՈՒ ԷՐ ՀԱՉՈՒՄ ԻՄ ՇՈՒՆԸ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ես մի շուն ունեմ, անունը Պեպի: Նա շատ չարաճճի է, խորամանկ, և եթե կուզեք իմանալ, մի քիչ էլ երես առած:

Նա շատ է սիրում քաշքշել ամեն ինչ, տունն իրար խառնել: Սիրում է դունչը խցկել այնտեղ, որտեղ իրեն չի կարելի: Պեպին ամեն օր տակնուվրա է անում պայուսակս, տետրերս շաղ է տալիս սենյակով մեկ, և անպատճառ ամեն ինչ բզիկ-բզիկ կանի, եթե ժամանակին չհասնեմ: Եվ այդ ամենը նա սկսում է հատկապես այն ժամանակ, երբ նստում եմ դասերս պարապելու: Մեկ էլ տեսար սուսուփուս մտավ սեղանի տակ ու՝ հա՛փ... բռնեց շալվարիս փողքից: Անպիտանը չի ուզում հասկանալ, որ ես չեմ կարող շարունակ իրենով զբաղվել:

— Չէ՛, ստիպված ենք գյուղ տանել,— մի անգամ բարկացած ասաց մայրիկը:— Գուցե այնտեղ նա մի բանի պետք գա:

Եվ ահա մի օր էլ եկավ իմ քեռի Տիգրանը:

— Պատրաստվի՛ր, Պեպի՛, գյո՛ւղ ենք գնում՝ տատիկի մոտ,— ուրախ ճչացի ես:

Պեպին պլշած նայեց ինձ ու սկսեց շարժել պոչը: Ես, իհարկե, չասացի, որ իրեն թողնելու ենք գյուղում, բայց նա երևի կզգաց և դունչը քսելով ոտքերիս, տխուր վնգստաց:

Երբ գյուղ հասանք, արդեն մթնել էր:

— Ոչինչ, Պեպի՛, կլուսանա և մենք միասին կթափառենք, ինչքան կուզես:

Պառկեցինք քնելու՝ ես պատշգամբի մահճակալին, Պեպին՝ մահճակալիս մոտ:

Այգում խավար էր, լռություն: Երկնքից կախվել էր մեծ ու կլոր լուսինը: Պեպին չէր քնում: Ես էլ չէի ուզում քնել, բայց աչքերս փակվում էին...

Կեսգիշերին վեր թռա աղմուկից: Պեպին կատաղած հաչում էր: Նրա ձայնը գալիս էր այգու խորքից: Բայց ինչո՞ւ էր հաչում: Երևի լուսնի վրա... Ես գիտեմ, որ շները սիրում են հաչել լուսնի վրա: Վերմակը քաշեցի գլխիս և պառկեցի: Աչքս նոր էր փակվել, երբ զգացի, որ մեկը քաշում է վերմակիս ծայրից: Վեր թռա: Պեպին էր: Նա բաց թողեց վերմակս, սկսեց տարօրինակ հաչել ու դնչով այգու կողմը ցույց տալ: Նայեցի նրա ցույց տված ուղղությամբ և սարսափեցի:

Ինչ-որ մեկը, ձեռքերը պարզած, այգու ծայրից դանդաղ շարժվում էր դեպի մեզ:

— Էհե՜յ, ո՞վ ես...

Իմ ձայնի վրա, Պեպին թափով նետվեց դեպի անծանոթը ու է՛լ ավելի ուժգին սկսեց հաչել: Մարդը ետ-ետ գնաց և՝ թը՛մփ... փռվեց խաղողի թփերի մեջ: Պեպիի հաչոցը փոխվեց խուլ գռմռոցների: Ուզեցի վազել, կանչել քեռի Տիգրանին, չկարողացա, ոտքերս չէին պոկվում պատշգամբի հատակից: Ահա և հայտնվեց Պեպին՝ բերանում ինչ-որ բան...

— Այս ի՞նչ ես արել, Պեպի՜... Դու հասկանո՞ւմ ես, թե ինչ ես արել,— լացակումած բղավեցի ես ու ոտքով ուժեղ հասցրի դնչին:

Պեպին բերանից ցած գցեց պատռված obիքը, կաղկանձեց սիրտ ցավեցնելու չափ և նորից այգու խորքը վազեց: Իսկ ես ներս ընկա ու ամբողջ կոկորդով գոռացի.

— Հասե՛ք, շո՛ւտ. Պեպին մա՛րդ է պատառոտել:

Քեռի Տիգրանը կարմանքով նայեց ինձ.

— Պեպի՞ն: Որտե՞ղ:

— Ցախատան դիմաց, այգու թփերի մեջ...

Քեռի Տիգրանը սկսեց քրքջալ: Ես դուրս թռա ու վազեցի այգու խորքը: Պարզվեց, որ դա ոչ թե մարդ էր, այլ՝ խրտվիլակ, շորեր հագցրած փայտե սովորական խրտվիլակ:

Ես ամոթից ուզում էի գետինը մտնել:

Ինձ թվում է, որ Պեպին՝ նույնպես:



*Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել*

# ՓՐԿՎԱԾ ԳԼՈՒԽ-ԳՈՐԾՈՑՆԵՐ

Աշխարհի հրաշալիքներից մեկն է Դրեզդենյան պատկերասրահը: Այստեղ ի մի են հավաքված և խնամքով պահպանվում են տարբեր դարաշրջանների ու ժողովուրդների արվեստի ու մշակույթի բազմաթիվ գանձեր: Գեղեցիկ ու լուսավոր դահլիճներում ցուցադրված են հունա-հռոմեական անտիկ և ժամանակակից քանդակագործների աշխատանքներ, չինական ու գերմանական ճենապակե եզակի արձանիկներ ու սպասքներ, միջնադարյան իրերի ու սպառազինության հավաքածուներ, դրամներ, թանկագին մետաղներից պատրաստված անկրկնելի զարդեր և որ ամենակարևորն է՝ նըկարներ: Ռաֆայելի, Ռուբենսի, Տիցիանի, Բոտիչելիի, Ռեմբրանդտի, Ջորջոնեի, Վերոնեզեի, Վելասկեսի, Պուսենի, Ռենուարի, Գոգենի և ուրիշ շատ նշանավոր նկարիչների կտավները, իրավամբ, Դրեզդենյան պատկերասրահի հպարտությունն են կազմում: «Այստեղ մի դահլիճից մյուսն ես անցնում, ինչպես մի հրաշքից՝ մյուսը: Չես ուզում կտրվել մի նկարից, բայց կանչում է հաջորդը»,— գրում է Կոնստանտին Ֆեդինը:

Չորս հարյուր տարուց ավելի է, ինչ Դրեզդենյան պատկերասրահը մեծ արվեստին հաղորդակից է դարձնում միլիոնավոր մարդկանց: Շատ փորձություններ է տեսել ու հաղթահարել պատկերասրահը. հրդեհ, թալան, կարիք, բայց այս բոլորը նսեմանում է ֆաշիստների կատարած հանցագործության համեմատ: Անցնելով իշխանության գլուխ, հիտլերականները Գերմանիայում հաշվեհարդար սկսեցին առաջադեմ արվեստի նկատմամբ: Քաղաքների հրապարակներում խարույկներ էին վառում աշխարհահռչակ գրողների գրքերով, հալածանքների ենթարկում արվեստագետներին, ճընշում և արգելում ստեղծագործական միտքը: Արվեստի ու մշակույթի օջախ՝ Դրեզդենյան պատկերասրահը չէր կարող անմասն մնալ այս ամենից: Կառավարությունը ոչ միայն միջոցներ չի տրամադրում պատկերասրահի կարիքների համար, այլև 1939 թվի օգոստոսի 28-ին այն փակում է: Ֆաշիստական Գերմանիան բոլոր միջոցները օգտագործում էր պատերազմի համար: Սկսվում է Երկրորդ համաշխարհային պատերազմը: Զավթելով Չեխոսլովակիան, Լեհաստանը, Ֆրանսիան և ուրիշ երկրներ, հիտլերականները սնապարծորեն



## ՏԱՏԻՍ ՇԱԼԸ

*ՌԱԶՄԻԿ ԱՐՏԵՄՅԱՆ*



Տատս ծեր է,
Շատ ծեր տատ,
Ասես ձյուն կա
Շալի տակ:
Ձմեռ լինի
Թե գարուն,
Նույն գորշ շալն է
Նա կրում...
Նրա համար
Ես այսօր
Շալ եմ գնել
Ծաղկավոր:
Տանեմ ու տամ
Իմ տատին,
Թող գարունով
Փաթաթվի:
Գույնը տայ նոր
Շալի մեջ
Էլ չմրսի
Տատս խեղճ...



## ԲԱՑԱՏ

*ԱՐՏԱՇԵՍ ՅԱՎ*

Թավ բացատում անտառի
Մի եղնիկ էր արածում,
Դեմից ցատկով կատաղի
Վագրը երախն է բացում:

Եղնիկը խեղճ՝ ահ առած,
Սլանում էր ու ճնում,
Վագրը վազքով սրընթաց
Իր զոհին էր հետևում:

Եղնիկն առանց խունապի
Ելք էր փնտրում փրկության,
Երբ հայտնվեց իր ճամփին
Խաղաղասեր փիղ հսկան:



# ԼԱՎ ՕՐ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Ծիծաղում է փիղն ամեհի՝
բա՜հ-բա՜հ-բա՜հ:
Ծիծաղում է ձիտը զվարթ՝
ծի՜վ-ծի՜վ-ծի՜վ:
Ծիծաղում է շունը բակի՝
հա՜ֆ-հա՜ֆ-հա՜ֆ:
Ծիծաղում է մուկը բնում՝
հի՜-հի՜-հի՜:
Ծիծաղում է արջն անտառում՝
օ՜ֆ-օ՜ֆ-օ՜ֆ:
Ծիծաղում է քամին,
Ծիծաղում է կատուն,
Ե՛վ առվակը ուրախ,
Ե՛վ ձկնիկը կապույտ,
Ե՛վ գույները բազում,
Ե՛վ ձայները բոլոր,
Որովհետև պայծառ
Ու լավ օր է այսօր:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Ի Մ

Այս որ տեսավ վիթխարին,
Գլուխն այնպես օրորեց,
Որ գիշատիչն անտառի
Եկած ճամփան մոլորեց:

Որսն ազատված օրհասից,
Աչքերի մեջ՝ ցող արցունք,
Խոսք չէր գտնում, որ ասի
Իր փրկարար դրացուն...

Ինչ լավ է, երբ աշխարհում
Սաստող ուժ կա չար ցեղին,
Որ հույս-փրկիչ է դառնում
Անօգնական ամենքին:

հայտարարում են, որ Սովետական Միությունը կըգրավեն մի շաբաթում: Սակայն մեր հայրենիքի վրա հարձակումը դառնում է նրանց ջախջախման սկիզբը: Սովետական բանակը ոչ միայն չի պարտվում, այլև երկիրը մաքրելով թշնամուց՝ անցնում է հակահարձակման, ազատագրում հիտլերականների լծի տակ տառապող ժողովուրդներին և մըտնում Գերմանիա:

Դրեզդենյան պատկերասրահը պատերազմը դիմավորեց անպատրաստ: Հիտլերականները ինքնավստահ հավատացնում էին, թե հակառակորդը երբեք չի մտնի Գերմանիա և այդ պատճառով ռմբապաստարան չկառուցեցին պատկերասրահի համար: Սարսափելի հետևանքը չուշացավ: 1945 թվի փետրվարի 13-ին՝ անգլո-ամերիկյան ավիացիան ռմբակոծության ենթարկեց Դրեզդենը: Հինգ օր ու գիշեր այրվում էր քաղաքը և երբ հրդեհը մարեց, միայն սևացած ավերակներ էին մնացել: Պատկերասրահի մասնաշենքերը քանդվել էին, հրո ճարակ էին դարձել ցուցանմուշներ և 197 նըկար, որոնց արժեքը անգնահատելի է: Խուճապահար հիտլերականները մնացյալը պաշտպանելու համար՝ դիմում են ամենաանքնական միջոցին: Նկարները թաքցնում են զանազան խոնավ, օդափոխությունից զուրկ, կեղտոտ ու վտանգավոր հանքահորերում, թունելներում, քարհանքերում, ամրոցների նկուղներում: Հետո զգալով իրենց մոտալուտ կործանումը, ականապատում են թաքստարանները: Դժվար է ասել, թե ինչ կորուստ կկրեր մարդկությունը, եթե այդ հրեշավոր ծրագիրը իրագործվեր: Բարեբախտաբար, Դրեզդենյան պատկերասրահը չի ոչնչանում: Սովետական կառավարությունը տեղյակ լինելով նրան սպառնացող վտանգին, ստեղծում է փրկարար խումբ, և սովետական մարտիկները գերմանացի հակաֆաշիստների օգնությամբ՝ անկորուստ գրավում են թաքստարաններն ու ականազերծում:

Հաղթանակից հետո սկսվում է Դրեզդենյան պատկերասրահի նոր պատմությունը: Անբարենըպաստ պայմանների պատճառով տուժած ավելի քան մեկ ու կես միլիոն արվեստի ստեղծագործություն տեղափոխվում է Սովետական Միություն, որոնք վերականգնվում են Մոսկվայի, Լենինգրադի ու Կիևի պատկերասրահներում: 1955 թվին այդ բոլորը վերադարձվում է Գերմանական Դեմոկրատական Հանրապետությանը, վերակառուցված Դրեզդենյան պատկերասրահին: Հանձնման արարողությունը վեր է ածվում սոցիալիստական երկու երկրների բարեկամության ցույցի:

Դրեզդենյան պատկերասրահի դռները միշտ լայնորեն բաց են աշխարհի խաղաղասեր ու արվեստասեր մարդկանց առջև:

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ



# ՀԵԼԻԱԴՆԵՐԻ ԱՐՑՈՒՆՔՆԵՐԸ

*ԱՐՏԱԿ ՌՍԿԱՆՅԱՆ*

Երկար դեգերումներից հետո Իթաքե վերադարձած Ոդիսևսը, աստվածուհի Պալլասի կամքով կերպարանափոխված և մուրացկանի ցնցոտիներ հագած, առաջինը հյուրընկալվեց քաղաքից ոչ հեռու մի փոքրիկ տնակում: Տնակը խոզարածների ապաստարանն էր: Նրան դիմավորող խոզարածը՝ Էվմեոսը պատշաճ վերաբերմունք ցուցաբերեց աղքատ օտարականի նկատմամբ: Ծայր առավ սրտաբաց մի զրույց. Ոդիսևսը պատմեց իր թափառ կյանքի, իսկ Էվմեոսը՝ իր դժգույն ճակատագրի մասին: Պարզվեց, որ Էվմեոսը ոչ թե խոզարած է, այլ Սիրիա կղզու թագավորի՝ Կտեսիոս Օրմենածինի մինուճար որդին, որ նրա հոր երկիրը «շատ էլ մարդաշատ չէ, բայց հարուստ է և բարեբեր, կանաչավետ արոտներով ու խաղողի այգիներով»: Պատմեց, որ իրեն փախցրել են փյունիկեցի վաճառականները, բերել Իթակե և վաճառել Ոդիսևսի հորը՝ Լաերտին: Արքայազնին վաճառականների նավն է հասցրել իր իսկ դայակը, թագավորի վստահությունը շահած մի փյունիկուհի. «Խաբեբաներն այն անիրավ խելքահան են անում նրան, երբ լվացք էր անում մի օր նրանց նավի մոտ գոգավոր»: Այնուհետև այսպես է շարունակվում Հոմերոսի «Ոդիսական» պոեմում.

«Իսկ երբ արդեն պատրաստ էին մեկնել նավով արագընթաց,
Այնժամ մեկին համբավատար ուղարկեցին այդ կնոջ մոտ,
Եվ նա իբրև արհեստավոր ներս է մտնում պալատը մեր:
Նա մի շղթա ուներ ոսկուց, վրան սաթից վարդաքարեր»:

Սաթ հունարեն նշանակում է էլեկտրոն: Ահա հենց այս բառով էլ հետագայում կոչվեց մի գիտություն, որ հայտնի է էլեկտրականություն անվամբ: Գրավոր աղբյուրներից «Ոդիսականը» առաջինն է, ուր օգտագործված է այդ բառը:

Էվմեոսի ասելով, սաթով զարդարված ոսկե շղթան մեծ հետաքրքրություն է առաջացրել նրա հոր պալատում և մինչ պալատականները զբաղված են եղել այդ շղթայով, ստրկուհին բռնել է Էվմեոսի ձեռքը և շտապել դեպի փյունիկեցիների նավը:

Իհարկե, հետաքրքիր է շարունակել այս պատմությունը, բայց ոչ պակաս հետաքրքրություն է ներկայացնում նաև այն, թե ինչ է իրենից ներկայացնում սաթը:

Այն պատրաստվում է զարմանալի գեղեցկություն ունեցող հատուկ քարից: Մագնիսի նման օժտված է ձգելու հատկությամբ: Նա դեպի իրեն կարող է ձգել թեթև տաշեղիկներ, թելի և թղթի կտորներ: Եվ հենց այդ հատկությունների հիման վրա էլ տարբեր ժողովուրդներ տարբեր կերպ են անվանել այդ քարը: Այսպես, օրինակ, հույները կոչել են էլեկտրոն, հռոմեացիները՝ հարպաքս, որ նշանակում է կողոպտող, պարսիկները կոչել են կավուբոյ, այսինքն՝ քար, որ կարող է ձգել դյուրաշարժ մարմիններ:

Հետաքրքիր է, որ արաբական անվանումը՝ «րաադ» համընկնում է կայծակ բառի հետ: Հավիվ թե այդ համընկնումը կրեր պատահական բնույթ: Հավիվ թե պատահական կարելի է համարել նաև այն, որ իրենց հերոսուհիներին Էլեկտրա անվամբ են կոչել Հոմերոսն ու Էվրիպիդեսը: Այդ հերոսուհիները, ինչպես գիտեք, օժտված են կրակոտ ու բռնկվող բնավորությամբ, նրանց հայացքը «կայծակնացայտ» է:

Ասում են, որ այդ տարօրինակ քարի ձգողության հատկությունը հայտնաբերել է Թալես Միլեթացու աղջիկը: Դժվար թե, այն հավանաբար հայտնի է եղել դեռ շատ առաջ և գրեթե ամենուր: Այսպես, օրինակ, անցյալ դարի վերջերին, երբ Ա. Հումբոլտը Օրինոկո գետի ավազանում այցելեց քաղաքակրթության ազդեցությունը ամենևին չկրած հնդկական ինչ-որ ցեղերի, համոզ-

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐ

(Նմուշներ հայ ժողովրդական բանահյուսությունից)

## ՔԱՀԱՆԱՅԻ ԽՈՐՀՐԴՈՎ

*Գյուղացին գանգատվում է քահանային, որ ամեն օր ուրուրը տանում է իր թխսկանի ճուտերից մեկին: Քահանան խորհրդի կարգով նրան ասում է.*

*— Գնա՛ ճուտերի ոտները թելով իրար կապիր, իսկ թելի ծայրն էլ ամրացրու թխսկանի ոտին, ուրուրը էլ չի կարողանա տանել քո ճուտերին:*

*Գյուղացին կատարում է քահանայի խորհուրդը: Գալիս է ուրուրը և տանում է իրար կապված բոլոր ճուտերին՝ իրենց մոր հետ միասին:*



## ՎԱՐԴԱՊԵՏԻ ՄՈՐՈՒՍԸ

*Վարդապետը եկեղեցում քարոզ էր կարդում, ձեռները իրար էր տալիս, շփում մորուսը, կպրե կարասով, մազե կամուրջով վախեցնում մեղավոր մարդկանց: Նրա դիմացը կանգնած էր մի պառավ կին և հոնգուր-հոնգուր լաց էր լինում:*

*Երբ ժամասացությունը վերջանում է, մարդիկ հեռանում են,*

վեց, որ նրանք ծանոթ են այդ քարի հատկություններին և նրա շուրջը ծավալված խոսակցությունները սոսկ գեղեցիկ հին հեքիաթներ են:

Հեքիաթը՝ հեքիաթ, բայց այնուամենայնիվ որտեղի՞ց է առաջացել այդ քարը կամ ի՞նչ է իրենից ներկայացնում ընդհանրապես:

Դիմենք նորից առասպելին: Իսկ ըստ այդ առասպելի, այդ շողշողուն քարերը իբր թե Ֆաետոնի քույրերի՝ հելիադների արցունքներն են:

Հոր՝ Արևի աստծո՝ Հելիոսի թույլտվությամբ Ֆաետոնը մի անգամ երկինք բարձրացավ ոսկեհուռ երկանվով և փորձեց ընթանալ երկնակամարով, բայց չկարողացավ ղեկավարել բոցեղեն ձիերին. Հելիոսի ձիերը փախան դեսուդեն, երկնքով մեկ ցաքուցրիվ եղան երկանվի բեկորները և ձիերի լծասարքը: Իսկ Ֆաետոնը, հրկիզվող գանգուրներով, աստղի պես շողաց օդում և ընկավ իր հայրենիքից հեռու՝ Էրիդանոս գետը:

Հեսպերիդյան հավերժահարսերը հողին հանձնեցին նրա դին: Ֆաետոնի հայրը՝ Հելիոսը վշտի մեջ ընկավ ու ծածկեց դեմքը և ամբողջ օրը չերևաց երկնքում: Հանգուցյալի մայրը՝ Կլիմենեն ի վերջո Էրիդանոսի ափերին գտավ որդու ոչ թե դին, այլ՝ դամբարանը: Դառնորեն ողբաց որդու կորստյան համար:

Կորած եղբորը ողբացին նաև Կլիմենեի դուստրերը՝ հելիադները: Նրանց վիշտն անսահման էր, ուստի աստվածները նրանց բարդիներ դարձրին՝ հակված Էրիդանոսին:

Մինչև այսօր էլ նրանց արցունքները կաթում են սառնորակ ջրերի մեջ, սառչում ու թափանցիկ հակինթ են դառնում:

Հակինթ կամ սուտակ: Այսպես է կոչվում այդ հանքաքարը: Այն գոյացել է երրորդական շրջանի փշատերև ծառերի խեժերից: Աչքի է ընկնում իր բոսոր փայլով: Նրա տարբեր եղանակներով կատարված մշակումները այսօր էլ օգտագործվում են որպես վարդեղեն, ներկանյութ և այլն:

*վարդապետը կանչում է պառավին, հարցնում.*

*— Պառա՛վ, քո ցավն ի՞նչ է, որ այդքան արցունք թափեցիր իմ քարոզի ժամանակ:*

*— Ա՜խ, հա՛յր սուրբ, քեզանից պահեմ, աստծուց ո՞նց պահեմ: Ես մի այծ ունեի, մի քանի օր առաջ գայլը տարավ: Դու որ քարոզ էիր ասում, գլուխդ բարձրացնում իջեցնում էիր, մորուքդ հրար էիր տալիս, շատ էիր նմանվում իմ այծին, երբ նա խոտ ուտելիս բարձրացնում իջեցնում էր գլուխը, մորուքը հրար տալիս: Նայում էի քեզ, հիշում այծիս ու լաց լինում:*





## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՎԵՐՋՆԱԳԻԾԸ ՀԱՏԵՑԻՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Մասիսի շրջանի Նոր Խարբերդ գյուղի նորակառույց դպրոցում շինարարները ավարտել էին իրենց անելիքը և հերթը հասել էր դպրոցականներին: Բարձր դասարանցիներից կազմված ներկարարների, ծեփագործների, հյուսների, օժանդակ աշխատանք կատարողների բրիգադները այնպես էին հմտացել, որ վարպետորեն ծեփում և ներկում էին պատերը:

Տասն օր էր մնացել ուսումնական տարվա սկզբին: Քսանհինգ կաբինետ հարկավոր էր կահավորել սարքավորումներով, արհեստանոցներում մեքենաներ, հաստոցներ և դազգահներ տեղադրել, մաքրել դասասենյակների հատակն ու պատուհանները, բարեկարգել դպրոցի շրջակայքը:

— Կկարողանա՞ք ժամանակին ավարտել աշխատանքները,— հարցրի դպրոցի դիրեկտոր Արտավազդ Գևորգյանին:

— Ճիշտն ասած, այդ մեզ էլ է մտահոգում, իսկ պատասխանը աշակերտներից ենք սպասում,— մեղմ ժպտալով ասաց դիրեկտորը:

Ընդմիջման ժամը ավարտվել էր և մանր ու մեծ խմբերով աշակերտներ էր, որ գալիս էին դպրոց: Թվում էր, թե վերջ չկար նրանց երթին: Ծեփագործների խմբից Հովսեփ Առաքելյանը, Տիգրան Միրզոյանը, Համազասպ Շմավոնյանը, Աշոտ Թումանյանը արդեն հագել էին արտահագուստները ու սկսել աշխատանքը: Համազասպն ու Տիգրանը պատգարակով գաջ էին բերել և դատարկել Օնիկի ու Վոլոդյայի առջև:

Տղաները լավ էին աշխատում: Լավ էին աշխատում միջանցքներն ու դասասենյակները մաքրող աղջիկները: Յուրաքանչյուր օղակ կամ ջոկատ մինչև օգոստոսի քսանութը պետք է մաքուր ու կահավորված հանձներ իրեն վստահված տեղամասը: Թերացողները կզրկվեին էքսկուրսիա մեկնելուց: Աշակերտները հաճույքով, ոգևորությամբ էին աշխատում:

Եվ ես այդպես էլ չհարցրի նրանց՝ շենքը ժամանակին շահագործման կհանձնվի՞: Նրանց քրտնաջան աշխատանքն արդեն իմ հարցի գոհացուցիչ պատասխանն էր:

*ՎԱՀԱՆ ՄԽԻԱՅԱՆ*




## ԳԵՐԲԱԶԿԱԹՈՌ



Ամերիկյան դիզայներ Ջոն Դեհֆուկը երկտեղանի մի ինքնատիպ բազկաթոռ կառուցեց: Նրա մեջ զետեղված է հեռուստացույց, ձայնագրիչ, հեռախոս, ժամացույց, մոխրաման, երկու կանթեղ և հանգստի համար անհրաժեշտ բազմաթիվ այլ հարմարանքներ: Հիդրավլիկ բռնակների միջոցով նստողը հեշտությամբ կարող է ինքնուրույն փոխել իր դիրքը և օգտվել ցանկացած հարմարանքից:

## ԱԿԱՄԱ ԳՅՈՒՏԱՐԱՐԸ



Լոնդոնի մերձակայքի դըպրոցներից մեկում, ֆիզիկայի ուսուցիչը, որի դասերին երեխաները բավականին աղմկում էին, ստիպված եղավ դառնալ գյուտարար:

Նա մի կառուցվածք պատրաստեց, որը ավտոմատորեն չափում է աղմուկի ուժը: Երբ աղմուկը սահմանն անցնում է, գրատախտակի վրա վառվում է կարմիր լապտերը և ձայնագրիչը ազդարարում է դպրոցի դիրեկտորի ձայնը. «Երեխանե՛ր, մի՛ մոռացեք, որ ֆիզիկան ամենագլխավոր գիտությունն է այսօր: Դրա համար էլ կարգապա՛հ եղեք»:

Հանգստացնող հարմարանքը աշխատում է անխափան:

## ՏՈՒՆ՝ ՄԱՄՈՆՏՆԵՐԻՑ

Կրակովի մոտերքում կատարած պեղումների ժամանակ լեհ մասնագետներ Յանոս Կոզլովսկին և Հենրիխ Կուբիյակը հայտնաբերեցին բնակավայր, որը կառուցվել է քսան հազար տարի առաջ: Այն բաղկացած էր 12 կացարաններից և ամբողջովին կառուցված մամոնտների ոսկորներից:

Մամոնտ որսացողները բնակություն են հաստատել ծովի մակերևույթից 250 մետր բարձրության վրա գտնվող լեռնապարով մեկուսացված սարահարթում, որտեղ չի եղել ո՛չ ծառ և ո՛չ էլ որևէ այլ շինանյութ: Հավանաբար դրա համար էլ նրանք ստիպված են եղել իրենց տները կառուցել մամոնտների ոսկորներով, որոնց մսով սնվել են:

Յա. Կոզլովսկին և Հ. Կուբիյակը մանրամասն տալիս են այդ բնակարաններից մեկի նկարագրությունը: Տան հիմքը, որը իրենից ներկայացնում է մի շրջան, շարված է մամոնտների ստորին ծնոտներով և վերջույթներով: Հիմքի վրա բարձրանում է բնակարանի հիմնակմախքը, որը կառուցված է ժանիքներից, կողոսկրերից և ողնաշարից, ընդ որում ժանիքները օգտագործվել են նաև կամարներ կապելիս: Վերջինս պահել է ամբողջ կառուցվածքը: Ոսկրե հիմնակմախքով բնակարանը սառը քամիներից պաշտպանելու համար շրջափակել են մամոնտների կաշիներով:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

## ԿԱԹԻԼԸ ԾՈՎՈՒՄ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Կաթիլ-կաթիլ թե գումարվեն,
Շիթ կբերեն ծորակին,
Շիթ ու աղբյուր թե գան ձուլվեն,
Առու կտան ձորակին:

Առու-առու թե միանան,
Գետ կդառնան ու վտակ,
Գետ ու վտակ գրկեն իրար,
Ծով կդառնան կապուտակ:
Ծովի գլխով դարեր կանցնեն,
Ծով կմնա նա էլի,
Կաթիլները թե ծով ծնեն,
Նավ կպահեն թևերին:

# ԹՈՐՈՍԸ, ՍԱՐԳԻՍԸ, ՆԻԿՈՂՈՍԸ...

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

Իմ մանկության ընկերոջից անակնկալ նվեր ստացա՝ խնամքով փաթաթված մի գիրք: Իսկական անակնկալը, սակայն, առջևում էր: Բացեցի փաթեթը և ինչ տեսնեմ. մանրանկարչուհի Աստղիկ Գևորգյանի ալբոմն է՝ շքեղակազմ, ճաշակավոր վերտառությամբ, աջ անկյունում մանրանկարչության մի սքանչելի նմուշ: Ուրախությունս անչափ էր, քանի որ ես գիտեի, թե հեղինակն ինչքա՜ն ժամանակ և ի՜նչ մանրակրկիտ աշխատանք է թափել այդ ալբոմը կազմելու համար:

***

Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող 10660 ձեռագրերից գիտե՞ք, որ մեծ մասը, մոտավորապես 7000-ը, պատկերազարդ են:

Յոթ հազար պատկերազարդ ձեռագիր Մատենադարանի գրապահոցում՝ գրքերի նշանավոր այդ գանձարանում, որոնցից ընդամենը մի քանի տասնյակն է ցուցասրահում: Փորձենք մտովի դիտել այն պատկերասրահը, որը կարող էր կազմված լինել չցուցադրվող հազարավոր ձեռագրերի էջերից: Անհնար է նույնիսկ երևակայելը: Բայց ահա մի մարդ, որը տասը-տասներկու տարում այդ 7000 նկարազարդ ձեռագրերը մեկ առ մեկ թերթել է, ու դեռ դրանց մեջ պատահել են այնպիսիք, որոնց վերադարձել է երկրորդ, երրորդ, նույնիսկ հինգերորդ անգամ: Նա մանրամասն ուսումնասիրել ու զննել է յուրաքանչյուր էջը, էջի յուրաքանչյուր նկարը, և դրանցից ընտրել, առանձնացրել է արհեստներին ու կենցաղին նվիրված պատկերները, ընդօրինակել դրանք և համախմբել «Արհեստներն ու կենցաղը հայկական մանրանկարներում» վերնագիրը կրող ալբոմում, բացելով մեր առջև մի աշխարհ, որն սկսվում է 1038 թվականով և ավարտվում մոտավորապես 1765-ին:

***

«Շերանիկ, քանի գաս ձուկն բեր». սա մակագրությունն է մի զողտրիկ պատկերի, որն ընդօրինակված է 1211 թվականին Հաղպատում գրված ձեռագրից: Ծաղկողի[1] անունը Մարգարե է: Գույների ինչպիսի՜ ներդաշնակություն, ինչպիսի՜ ճաշակ: Նորից ու նորից դիտելով նկարը, կնկատեք, որ Շերանիկին հատուկ է որսորդի պարծենկոտությունը՝ ձեռնափայտի ծայրից կախված է մի խոշոր ձուկ, երիտասարդի դեմքի արտահայտությունն ինքնավստահ է, հաջողությունը ցուցադրողի գոհունակությամբ լի: Հասպա գոտիկից կախված ծոպկավոր թաշկինակը և Շերանիկի պճնասիրությունն ապացուցող կզեստն ու գուլպաները:

1676 թվական: Գանձակի Քարհատ գյուղ. Ծաղկող Գրիգոր քահանա: Ահա մեր աչքի առաջ հառնում է շենքի կառուցման կենդանի մի պատկեր. մեկը հղկում է աստիճանները, իսկ երկրորդը պատի վրայից ուղղալարով որոշում է շարվածքի հարթությունն ու ուղղությունը: Դարերի խորքից մեզ հասած ձեռագրերը պատմում և ցույց են տալիս, թե ինչպիսի երկյուղածությամբ են հիմնադրվել ու ինչպիսի խնամքով կառուցվել տաճարներն ու բերդերը, տներն ու գավիթները: Հիմնադրումն ինքնին մի գեղեցիկ արարողություն է եղել, նախքան առաջին քարը դնելը օրհնության խոսք են ասել, շինարարի բազկին ուժ են մաղթել, մտքին՝ պայծառություն, հոգուն՝ հանգիստ ու բարություն և, ամենակարևորը, իր կատարելիք կարևոր գործին նվիրվածություն, նվիրվածությո՜ւն:

Վերադառնանք ալբոմի շապիկին: Տեսեք, թե անհամաչափության միջոցով ինչպիսի՜ համաչափության է հասել ծաղկողը: Երկու ձեռքերի չափսերի «աճելի» տարբերությունը, «անբնական» խոշոր աչքերը, գլխաշորի ու վերնազգեստի ոլորապտույտ անցումները և, վերջապես, թելի ծայրին «պտըտվող» իլիկը, ստիպում են աղյուսակում փնտրել ծաղկողի անունը: Սակայն, ավա՜ղ, այդ սյունակը դատարկ է: Ալբոմի հեղինակը մեղավոր չէ դրա համար: Պարզապես ծաղկողի անունը չի հասել մեզ: Թերևս կորել է էջերից մեկը, որի մի անկյունում մանր, բայց պարզ տառերով կարող էր գրված լինել անունը: Կամ գուցե իր մասին համեստաբար լռե՞լ է ծաղկողը: Հայտնի է, սակայն, որ թել մանող կնոջ նկարը պարունակող ձեռագիրը կրում է 4818 համարը, գրվել է Հավարակն գյուղում, 1316 թվականին:

Էջերից երեքը թատերական արվեստին են նվիրված: Ուշագրավ է կերպարների շարժումը, կենդանիների, ծաղիկների ու թռչունների միջոցով արտահայտված այլաբանությունը, դիմակների ու հագուստների բազմազանությունը, գույնե՜րը, գույնե՜րը: Ձեռագրերից շատերը բոլորում են իրենց 1000 տարին, իսկ գույները պահպանել են իրենց թարմությունը, բոլոր նրբերանգները:

Ահա և նշանավոր 349 համար ձեռագիրը, որից նկարչուհին ընդ-

[1] *Հայկական ձեռագրերը պատկերազարդող նկարիչները կոչվում են ծաղկող:*



*Թևավոր խոսքեր*

## ԱՔԻԼԼԵՍՅԱՆ ԳԱՐՇԱՊԱՐ

Հին Հունաստանի մեծազոր հերոս Աքիլլեսը, ըստ ավանդության, ծովի աստվածուհի Թետիսի և հասարակ մահկանացու Պելևսի որդին էր: Մահկանացուների զավակներին սպառնում են զանազան վտանգներ: Որդուն վտանգից զերծ պահելու համար մայրը որոշում է նրան լողացնել Ստիքս սրբազան գետի ջրերում, որ մարդուն դարձնում էր անխոցելի: Բայց, երեխային ջրի մեջ ընկղմելիս, մայրը բռնում է նրա կրունկից, և Ստիքսի ջրերը չեն դիպչում կրունկին: Եվ երբ տրոյացի Պարիսի նետը դիպչում է նրա գարշապարին, Աքիլլեսը զոհվում է:

Այս լեգենդը վաղուց է զբաղեցրել մարդկանց մտքերը: Լեգենդից ելնելով, կրունկի ոսկրի տակ գտնվող ջիղը անատոմները կոչել են «աքիլլեսյան» իսկ «աքիլլեսյան գարշապար» խոսքը վաղուց ի վեր դարձել է մարդու թույլ խոցելի կողմը բնորոշող արտահայտություն:

Աքիլլեսի լեգենդը մասամբ պատմել է Հոմերոսը իր «Իլիականում»:

## ԲԱԲԵԼՈՆՅԱՆ ԱՇՏԱՐԱԿԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ

«Աղմուկ, աղաղակ, խառնաշփոթություն, մի խոսքով՝ բաբելոնյան աշտարակաշինություն»:

Լսե՞լ եք այս խոսքը:

Բաբելոնը հնադարյան քաղաք էր Ասիայում, Եփրատ գետի ափին, այժմյան Իրաքի տերիտորիայում: Աստվածաշնչի լեգենդն ասում է, թե Բաբելոնի բնակիչները վճռում են «երկինք հասնող» մի աշտարակ կառուցել, անմահացնել իրենց անունները, և սկսում են «աշտարակաշինության» աշխատանքները:

Մարդկանց հանդգնությունը զայրացնում է աստծուն, և նա հրեշտակներին հրամայում է «խառնել նրանց լեզուն»:

Բաբելոնացիները, որ մինչ այդ հասկանում էին միմյանց, հանկարծ սկսում են խոսել տարբեր լեզուներով, ծայր է առնում սարսափելի խառնաշփոթ վիճակ և աշտարակի շինարարությունը խափանվում է: Միանգամայն հասկանալի է, որ «բաբելոնյան աշտարակաշինություն» արտահայտությունը նշանակում է խառնաշփոթ, կարգ ու կանոնից դուրս վիճակ:

օրինակել է 21 նկար: Այս ձեռագիրը սկսել են գրել 1686 թվին Կոստանդնուպոլսում և ապա ավարտել Էջմիածնում: Նրա 652 էջերից յուրաքանչյուրը շքեղորեն պատկերազարդված է: Չե՞ք կարծում, որ 300 տարվա մեր հեռվից պարտավոր ենք ծաղկողին ասել՝

— Մարկո՛ս պատկերահան, երախտապա՛րտ ենք քեզ, խոնարհվում ենք քո տաղանդի, քո աշխատասիրության առաջ:

Իսկ նկարչուհուն մի՞թե շնորհակալ ու երախտապարտ չենք, որ մեզ համար ընդօրինակել է 21 նկար հենց միայն այդ ձեռագրից, բազում նկարներ այլ ձեռագրերից, որ Մատենադարանում իր աշխատելու 30 տարիների ընթացքում նա կազմել է միջնադարյան մանրանկարիչների մատենագիտությունը՝ 9—17-րդ դարերի բոլոր ձեռագրերն ընդգրկելով: Եվ հիմա էլ, նույն այդ ձեռագրերից նա ընտրում, ընդօրինակում է պատմիչների, գրողների, գիտնականների, ռազմիկների, գրիչների, ծաղկողների և պատմական այլ նշանավոր անձանց դիմանկարները՝ երկրորդ ալբոմը կազմելու համար:

Բոլոր դարերում իսկական վարպետները մեծ պատվի ու հարգանքի են արժանացել: Մարդիկ նրանց առաջ գլուխ են խոնարհել:

— Երբ նկարում էի, չէի զգում, թե ժամանակն ինչպես է անցնում, — պատմում է նկարչուհին,— ծաղկողների շրջապատում ես ինձ երջանիկ էի զգում: Ինձ թվում էր, թե նրանք կենդանի կանգնած են կողքիս:

Նկարչուհի Աստղիկ Գևորգյանի համար միջնադարյան ծաղկողները կարոտով հիշվող հարազատներ են, որոնց մասին այլ կերպ չի խոսում, քան՝

— Իմ ծաղկողները, իմ սիրելի Նիկողոսը, Ստեփանոսը, իմ Հայրապետը, տաղանդավոր Մարգարեն, աշխատասեր Թորոս նկարիչը, Սահակ Վանանդեցին:

Քնքշանքով ասված այս անունները պատճառ եղան հիշելու այն օրերը, երբ նկարչուհին վերցնում էր վրձինն ու տեղափոխվում ետ, ետ դեպի միջնադար՝ իր միջնադարը, ուր ապրում են իր ծաղկողները՝ Թորոսը, Սարգիսը, Նիկողոսը, կաթիլ առ կաթիլ հավաքելու և լիաձեռն ու լիահոգի վերադարձնելու՝ գանձարանում պահվող հարստության ինչ-որ մասը մեզ հասանելի դարձնելու համար:



# ԵՐԵՔ ՏԱՐԻ ԱՌՅՈՒԾՆԵՐԻ ՄԵՋ



անզանիի հյուսիսարևմտյան մասում, Վիկտորիա լճի մոտ տարածված է Սերենգետի ազգային պարկը, որն հռչակված է ամբողջ աշխարհում: Նա գըրավում է 13 հազար քառակուսի կիլոմետր: Հարուստ է և բազմազան պարկի կենդանական աշխարհը: Ամենահամեստ հաշիվներով այնտեղ բնակվում են 400 հազար խոշոր վայրի կենդանիներ և միլիոնից ավելի կճղակավորներ:

Արգավանդ է Սերենգետիի հողը, հարթավայրերն անծայր հյութեղ կանաչով ծածկված: Տեղ-տեղ տափաստաններում բարձրանում են գրանիտյա խոշոր, անտառապատ բլուրներ: Դրանք առյուծների սիրած բնակավայրերն են: Այդ կենդանիների կյանքի ուսումնասիրությամբ էլ հենց ես պետք է զբաղվեի:

Ես որոշեցի նախ իմանալ մեր տան շրջակայքում ապրող բոլոր առյուծներին: Նրանցից մի քանիսին հիշելն հեշտ էր, բավական էր միայն նկատել նրանց վրա եղող որևէ բնական նշան՝ ճեղքված ականջը կամ դնչի սպին: Ահա թե ինչու երբ մենք ամբողջ ընտանիքով գնում ենք պարկում շրջագայելու, և ծանոթ առյուծների եմ հանդիպում, հաճույքով տանեցիներին պատմում եմ նրանց պատմությունը:

Ձախ ականջը ոլորուն առյուծուհուն ես կոչում եմ Ֆլոպեար: Նա շատ հոգատար մայրիկ է, ունի չորս առյուծիկներ (կորյուն): Իսկ այն առյուծուհին, որ աջ ականջի վրա նշան ունի, անցյալ տարի իր ձագերին կորցրեց: Նրա մոտ նստած ծեր առյուծուհու ժանիքների արմատներն են միայն մնացել: Նրա տարիքը քսանից ավելի է:

— Երևի դժվար է ապրում, ինչպե՞ս է նա իր համար սնունդ հայթայթում,— հարցնում է տղաս:

— Այո՛, նրա գործը հեշտ չի: Բախտավորություն է, որ նա ապրում է հոտի մեջ: Նա ուտում է ուրիշ առյուծների բերած միսը:

Առյուծների մեծ մասը ապրում է հոտերով, լինում են փոքր խմբեր՝ բաղկացած 4—5 կենդանուց: Լինում են և մեծ խմբեր: Մի անգամ ես հանդիպել եմ մի խմբի, բաղկացած երկու առյուծից, տասներեք առյուծուհուց և քսան կորյունից: Առյուծներից ոմանք կարող են թողնել խումբն ու գնալ տափաստան: Առյուծուհիները սովորաբար շատ հեռու չեն գնում:

Միևնույն խմբի անդամները տածում են միմյանց նկատմամբ քնքուշ զգացումներ, հանդիպելիս այտերն իրար են քսում, հաճույքից մնչում: Միասին որս են անում ու հանգստանում, իսկ ձագերը կարող են ուզած մայր առյուծին ծծել: Բայց առյուծների հոտերի միջև բարեկամություն չկա: Ճիշտ է, առյուծը, տափաստանում անծանոթ առյուծուհու հանդիպելիս, կարող է նրան ողջունել, բայց առյուծուհիները, իբրև կանոն, վռնդում են անծանոթ առյուծուհուն: Եվ ընդհակառակը, առյուծուհին կարող է բարեհամբույր վերաբերվել օտար առյուծին:

Եթե մի հոտը իր տերիտորիայում հանդիպում է անծանոթ առյուծի, անպայման կռիվ չի տեղի ունենում: Առյուծը մեկ-երկու մղոն հեռավորությունից հետևում է օտարին և սպառնալից գոմռում է ետևից: Բայց չի ձգտում հարձակվել: Կռիվներ, այնուամենայնիվ լինում են: Մի անգամ լուսադեմին ես մի առյուծի հանդիպեցի. նա հազիվ էր շնչում: Շուրջը թափված էին իր ոսկյա բաշի փնջերը: Մարմինը պատված էր խոր վերքերով: Առյուծուհին կանգնել էր կողքին և աղիողորմ ոռնում էր: Պարզվեց, որ նրա վրա են հարձակվել հարևան հոտի երեք առյուծ, այն ժամանակ, երբ նա իր տերիտորիայում հսկում էր զեբրին ու առյուծուհուն: Իհարկե, մենակ երեքին, անգամ երկուսին հաղթել չես կարող: Ես ինքս դա





վկան եմ եղել: Մի օր վաղ առավոտյան տեսա, թե ինչպես երկու անծանոթ առյուծ հետապնդում են մեկին մի ամբողջ մղոն: Հետո նրանք վերադարձան թավուտը, որտեղ թաքնված էին օտարի ձագերը: Սպանեցին նրանց, մեկին կերան, մեկին տարան: Ես երկար ընստել էի մեռած ձագից ոչ հեռու և սպասում էի՝ տեսնելու, թե ինչ է անելու մայրը: Կարծում էի կտեսնեմ մայրական զգացումների բուռն դրսևորում: Բայց ավա՜ղ... Առյուծուհին հոտոտեց մեռած ձագին և հետո նստեց ու սկսեց դիակը խժռել:

Առյուծները հաճախ հանդես են բերում այնպիսի անբանություն, որ առյուծուհիների վրա է մնում ամբողջ հոտին կերակրելու հոգսը: Նրանք մասամբ իրավացի են: Առյուծը հոտի գլուխն է: Նա պահպանում է տերիտորիան և հնարավորություն է տալիս առյուծուհուն հանգիստ աճեցնելու սերունդը: Իսկ դա շատ կարևոր է: Եթե հոտը կորցնում է երկու առյուծից մեկին, փոքրանում են երիտասարդ սերունդ աճեցնելու նրա շանսերը: Ես գիտեի մի այդպիսի հոտ: Քսանվեց կորյունից, որ ծնվել էին երկու տարում, միայն երկուսը ապրեցին: Հարևան հոտն ուներ երեք առյուծ, որոնք հուսալիորեն պահպանում էին հոտը, և քսան ձագից 12-ը ապրեցին:

Շրջելով իր հողամասում, առյուծը ամենուր թողնում է իր այցետոմսը՝ արձակում է հոտավետ շիթ: Դրանով էլ նա ցույց է տալիս, որ տերիտորիան արդեն գրավված է: Մինչև իսկ մի առյուծի հետքը մյուսին շատ բան է ասում, այդ գազանները շատ նուրբ հոտառություն ունեն:

Գիշերային ժամերն առյուծինն են: Հատկապես գիշերն է առյուծն իր հզորությունը ցույց տալիս: Նա հպարտ քայլում է իր կալվածքում: Ժամանակ առ ժամանակ գազանների արքայի ամպրոպանման մռնչոցը ցնցում է անդորրը:

Ինձ համար առյուծի մռնչոցը Աֆրիկայի ձայնն է: Նա իր երանգներն ունի, այսպես ասած՝ նյուանսները: Երբ ցածրաձայն թառանչ է բարձրանում, այդ մայր առյուծն է կանչում իր կորյուններին, որոնք թաքնված սպասում են մոր վերադարձին: Եթե առյուծը որոնում է իր հոտի անդամներին, նա մռնչում է բարձր, համառ և սպասում է պատասխան մռնչոցի: Անծանոթ առյուծը, այդ մռնչյունները լսելով, չի համարձակվում մնալ ուրիշի տերիտորիայում:

Առյուծների հոտերը մեծ մասամբ ապրում են իրենց տերիտորիայում՝ նստակյաց են: Առյուծները չեն հետևում զեբրերի մեծ հոտերին, անտիլոպ-գնուներին, թոմսոնյան վիթերին և այլ կենդանիների, ինչպես կարծում էին առաջ: Սերենգետիի կճղակավորների այդ տեսակները կատարում են ամենամյա արտագաղթ, չոր եղանակներ սկսվելու հետ քոչում են անտառոտ վայրեր, իսկ երբ սկսվում է անձրևների շրջանը, կրկին վերադառնում են տափաստան:

Առյուծներ կան, որ ազատ թափառում են հարթավայրերում, տարվա ընթացքում կտրելով մեծ տարածություններ: Նրանք թափառական կյանք են վարում ուրիշի տերիտորիայում այնքան ժամանակ, քանի դեռ տերերը չեն վռնդել նրանց: Լինում են և շրջմոլիկ առյուծուհիներ: Հավանաբար նրանք լքում են հոտը իրենց տերիտորիայի սննդի պակասի պատճառով:

Երբ մատղաշ առյուծները դառնում են երեք տարեկան, ծնողները վտարում են նրանց հոտից, եթե նրանք այնտեղ չեն գրավում զոհված առյուծների տեղը: Պատահում է նաև, որ երիտասարդ առյուծները հոտից վտարում են ավագ սերնդի առյուծներին: Այդ դեպքում արտաքսվածները վարում են թափառական կյանք, քանի որ Սերենգետիի շատ թե քիչ հարմար տերիտորիաները արդեն գրավված են:

Ինչպիսի՞ ապրելակերպ ունեն առյուծները, որտե՞ղ են որս անում և ինչո՞վ սնվում: Այս հարցերն ինձ շատ էին հետաքրքրում: Այդ բոլորը պարզելու համար, ես մի քանի օր ու գիշեր մեքենայով հետևել եմ այդ կենդանիներին: Եթե երկնքում լրիվ լիալուսինն էր փայլում, այդ անելը դժվար չէր: Անլուսին գիշերներին ես առյուծի վզին ամրացնում էի փոքրիկ ռադիոհաղորդիչ: Այդ նրա վզին էի անցկացնում նրա քնած ժամանակ: Մեքենայում ես ունեի ռադիոընդունիչ և կարող էի ազդանշանով հետևել, թե ուր գնաց առյուծը: Եվ ահա թե ինչ հաջողվեց ինձ իմանալ:

Շատ հաճախ գազանների արքան խլում է ուրիշի որսը, բայց սնվում է և լեշերով. անձրևների շրջանն

սկսվելու հետ, երբ հարթավայրերում հավաքվում են կես միլիոնից ավելի կենդանիներ, առյուծները սննդի պակաս չեն զգում։ Պարկի այլ մասերում առյուծները ամիսներով սնվում են միայն փոքրիկ վիթերով, քանի որ ուրիշ որս չի լինում։

Ցերեկով որս փախցնելու առյուծի փորձերը անհաջող են անցնում։ Նա չի աշխատում թաքնվել կամ էլ խոտերը ուժեղ շարժում է։ Բացի այդ, աննկատ մնալու դեպքում, առյուծները քամու ուղղությանը հետևել չեն կարողանում։ Իսկ զոհը, իբրև օրենք, շատ նուրբ հոտառություն ունի և վտանգն հայտնաբերում է մեծ հեռավորության վրա։

Միայն անտառոտ վայրում կամ ջուր խմելու տեղերում, որտեղ առյուծը կարող է աննկատ մոտենալ զոհին, որսը հաջող է լինում։ Դա մի աներևակայելի գրավիչ տեսարան է։ Առյուծուհին լարված ուշադրությամբ հետևում է որսին։ Նրա մարմինը այդ պահին ձգված է, պոչի ծայրը թեթևակի ցնցվում է։ Նա բարձրացնում է գլուխը, լարված շունչը պահում, ապա կրկին իջեցնում է գլուխը և շարունակում է լուռ, գետնին կպած գողեգող մոտենալ զոհին։ Անսպասելիորեն առյուծուհին նետվում է որսի վրա, ճանկում է նրան՝ կեռ ճանկերով զինված իր հզոր թաթերով։ Եվ արագ գետնում է։ Երբեմն առյուծուհին ճանկում է զոհի քիթը և շնչահեղձ է անում։ Ամբողջ պայքարը տևում է տասը րոպեից ոչ ավելի։

Ես հաճախ եմ լսել, որ իբր թե առյուծները սպանում են խոշոր կենդանիների՝ ակնթարթապես, մի ուտյունով, կրծում են նրանց կոկորդը, ջարդում են ողնաշարը և կամ մի հարվածով գետին տապալում, և սա, ընկնելով, իր ծանրությամբ ջարդում է իր վզի ողերը։ Ես նման բան երբեք չեմ տեսել։

Առյուծը արագ վազքի համար չի ստեղծված։ Նա պետք է թաքնվի իր որսից մեծ հեռավորության վրա։ Առյուծը հարձակվում է միայն այն դեպքում, երբ համոզված է, որ իր գրոհը հաջողությամբ կպսակվի։

Եվ կենդանիներին հայտնի է այդ։ Նրանք գիտեն, թե որքան մոտիկ կարող են գնալ առյուծին, հարձակման չենթարկվելու համար։ Դա ստեղծում է ծիծաղաշարժ իրավիճակներ։ Ես հաճախ եմ տեսել ըզգաստ, ասես շքերթի կանգնած, կենդանիների, այն ժամանակ, երբ առյուծը անտարբեր անցել է տեսչի պես, զննելով նրանց շարքերը։ Երևացող առյուծը վըտանգավոր չէ։ Կենդանիների արքան լավ գիտի իր հնարավորությունները և ավելորդ փորձեր չի անում։

Առյուծը կարող է մի ամբողջ շաբաթ ոչինչ չուտել։ Նա միանգամայն հարմարված է այդպիսի կիսաքաղց ռեժիմի։ Բայց և երբ բավականաչափ միս կա, նա կարող է տրաքվելու չափ ուտել, ուտում է ամեն ինչ, ոսկորներից և փորի պարունակությունից բացի։

Կատվազգիներից առյուծը ամենահասարակական կենդանին է։ Հավանաբար այդ սովորությունը ձեռք է բերվել համատեղ որս անելու ընթացքում։ Անտարակույս համատեղ որսը ավելի արդյունավետ է լինում։ Ասում են, որ առյուծները որսի ժամանակ սարսափելի մռնչում են, վախեցնում են որսին և քշում դեպի առյուծուհիները, որոնք թաքնված են լինում ետևում։ Ես այդ հաստատել չեմ կարող, չեմ տեսել։

Ես համոզվել եմ, որ առյուծները սպանում են թույլ և հիվանդ կենդանիներին, հենց որ հնարավորություն է ստեղծվում։ Խոտերի մեջ թաքնված երիտասարդ վիթերը, իբրև օրենք, գիշատիչների ճանկն են ընկնում պատահաբար։ Մինչդեռ թույլ ծերերը արագ դառնում են նրանց զոհը։ Նրանց զոհերի մեծ մասը, ըստ երևույթին, միանգամայն առողջներից են։

Երիտասարդ առյուծները սովորաբար սկզբում դիտում են, թե մեծերը ինչպես են որս անում, և հետո նոր միայն մասնակցում դրան։ Ճիշտ է, չեն հարձակվում որսի վրա։ Սպասում են, սպասում, մինչև մյուս առյուծները վերջ են տալիս զոհին։ Երկու տարեկան դառնալուց հետո միայն երիտասարդ առյուծները ձեռք են բերում կյանքի որոշ փորձ։

Տարեց առյուծները սովորաբար որս են անում միասին, բայց երբ առյուծը ուտելիս է լինում, չի սիրում, որ իրեն խանգարում են։ Շատ հետաքրքիր է դիտել, թե ինչպես են առյուծները խժռում իրենց զոհին։ Պատկերը հիշեցնում է գոմռացող, գզվռտացող շների ոհմակ, յուրաքանչյուրն աշխատում է մի կտոր ավել փախցնել։ Երիտասարդ առյուծը ստիպված է կռվով ձեռք բերել իր համար միս։ Որսի ժամանակ համագործակցելը չի նշանակում որսը հավասար բաժանել։

Երբ առյուծը տեսնում է, որ առյուծուհին սպանել է որևէ կենդանու, նա անպայման խլում է նրա որսը։ Դա ուժեղի իրավունքն է։ Առյուծը իշխում է առյուծուհու վրա։ Առյուծուհիներն էլ իրենց հերթին իշխում են երիտասարդների վրա։

Կորյունները, որոնք մեկից մինչև վեց հատը կարող են լինել նույն ծնողներից սերված, ապրում են համերաշխ, լրիվ վտանգի մեջ։ Ծնվում են նրանք կույր և կշռում են կիլոգրամից մի քիչ ավել։ Կյանքի առաջին շաբաթները կորյունները թաքնվում են գըլաքարերի արանքում կամ խիտ թփուտների մեջ։ Մայր առյուծուհին հաճախ գնում է որսի, մենակ թողնելով ձագերին երբեմն երկար ժամանակով։ Սկզբնական շրջանում կորյունները սնվում են միայն մայրական կաթով։ Առյուծուհին կերած միսը ետ չի տալիս՝ չի փսխում ձագերի համար, ինչպես որ ասում են։

Երբ կորյունները մեծանում են, մայրը տանում է նրանց իր սպանած ավարի մոտ։ Երբեմն էլ նա բերում է միսը որջը, ճիշտ է, երբ ինքը կուշտ է։ Երբ միսը քիչ է, մայրը մենակ ուտում է բոլորը և չարությամբ մռնչում է, երբ կորյունը փորձում է մի կտոր փախցնել։

Առյուծների մասին եղած գրեթե բոլոր գրքերը հաստատում են, որ մորը ձագերի հետ սովորաբար ուղեկցում է մի այլ՝ անզավակ առյուծուհի, որն իբր պաշտպանում է փոքրիկներին և որս է անում նրանց համար։ Ես չեմ կարող հաստատել այս։ Անզավակ առյուծուհիները հաճախակի հյուր են լինում որջերում, երբեմն առյուծուհիները իրար հետ պահպանում են շատ թե քիչ բարեկամական հարաբերություններ, անկախ այն բանից, թե նրանցից մեկը

# ԲՈՒՍԱԿԱՆ ՊԱՇԱՐՆԵՐՆ ԱՆՍՊԱՌ ՉԵՆ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Երկրագնդի բուսական պաշարները անսպառ չեն: Ամեն տարի հաղորդագրություններ են ստացվում այն մասին, որ երկրի երեսից իսպառ անհետանում են բույսերի այս կամ այն տեսակները: Անհետանում են հիմնականում մարդկանց անփութության և անտարբերության հետևանքով: Անհետանում են, քանի որ այդ տեսակները քիչ են տարածված երկրի երեսին և եղած աննշան պաշարներն էլ վատ են պահպանվում:

Բնապատմական պայմանների մեծ բազմազանության և երկրաբանական պրոցեսների բարդ անցյալի շնորհիվ մեր հանրապետության բուսական ծածկոցը աչքի է ընկնում տեսակների մեծ առատությամբ: Եթե ՍՍՀՄ-ի ամբողջ տարածքում, որը կազմում է ավելի քան 22 միլիոն քառակուսի կիլոմետր, հանդիպում են ընդամենը 12 հազար բուսական տեսակներ, ապա միայն մեր հանրապետության տարածքում, որը կազմում է 30 հազար քառակուսի կիլոմետր, տեսակների թիվը անցնում է 3300-ից:

Գիտության համար հազվագյուտ համարվող բուսական տեսակների կեսից ավելին հանդիպում են մեր փոքրիկ հանրապետությունում: Դեռ ավելին, 180 բուսական տեսակներ մեր հանրապետության «մենաշնորհն են» և Հայաստանի սահմաններից դուրս երկրագնդի վրա այլևս ուրիշ ոչ մի վայրում չեն հանդիպում: Եթե այդ հազվագյուտ տեսակները ոչնչանան, ապա միայն ու միայն մեր մեղքով դրանք ընդհանրապես կանհետանան երկրի երեսից:

Տեղյա՞կ են արդյոք Կոտայքի շրջանի դպրոցականները, որ վայրի ցորենի ու գարու հազվագյուտ բուսուտներ կան իրենց շրջանում, որ դրանք գիտության համար անգնահատելի արժեք են ներկայացնում: Հատկապես հազվագյուտ և արժեքավոր է ցորենի ուրարտական տեսակը, որը հանդիպում է միայն Հայաստանում, և աշխարհի մի շարք խոշորագույն բուսաբանների կարծիքով կուլտուրական ցորենի նախահայրն է հանդիսանում: Գիտե՞ն արդյոք Զանգեզուրի պատանի բնասերները, թե ի՞նչ հազվագյուտ տեսակներ են աճում իրենց լեռնաշխարհում: Արաքսյան կաղնին, արաքսյան կեռասենին, սիրիական տանձենին, զանգեզուրի տանձենին, նաիրյան նշենին, զանգեզուրի մասրենին, զանգեզուրի սզնին, եփրատյան բարդին հանդիպում են միայն ու միայն Զանգեզուրում:

Հայաստանի սահմաններում բոխիատերև ծելկվան հանդիպում է միայն Գորիսի շրջանում՝ Շուռնուխ գյուղի շրջակա անտառներում, ընդ որում մնացել են այդ տեսակի ընդամենը մի քանի ծառեր: Եթե առաջիկայում դրանք էլ հատվեն, ապա այդ հազվագյուտ ծառատեսակը իսպառ կվերանա մեր հանրապետությունից: Ոչնչացման եզրին են կանգնած նաև սովորական շագանակենին՝ Ղափանի շրջանի Շիկահող գյուղի անտառներում, նռնենին՝ Ախթալայի շրջակայքում ու Մեղրիում, խնկենին՝ Ախթալայում, Վայքում, Մեղրիում, հունաբը՝ Ախթալայում, Արարատի շրջանում, Արվնիի շրջակայքում և Մեղրիում:

Արջատխլենու ամենախոշոր ծառուտը ներկայումս գտնվում է Իջևանի շրջանի Թալա գյուղի մոտ: Սակայն այս հազվագյուտ ու արժեքավոր ծառերը վատ են պահպանվում, հատվում են որպես շինափայտ, համարյա բացակայում է ինքնացանը, իսկ արջատխլենու արհեստական եղանակով աճեցնելը կապված է մեծ դժվարությունների հետ: Արևելյան սոսու Հայաստանում եղած միակ ծառուտը գտնվում է Ծավ գետի հովտում՝ Հանդ գյուղի մոտ: Այս հազվագյուտ ծառատեսակի սերմնաբույսերը ոչնչացվում են անասունների կամ էլ կանաչապատող կազմակերպությունների կողմից, որոնք գարնանը այստեղից մեծ քանա-

---

*ձագեր ունի՞, թե՞ ոչ: Բայց ես երբեք չեմ տեսել, որ այցելող առյուծուհին ուրիշի ձագերի համար որս անի:*

*Սովորաբար ծնվող ձագերի մոտ կեսը սատկում են քաղցից կամ ոչնչանում են մայր առյուծուհուց լքվելով:*

*Ձագերի բարձր մահացությունը, առյուծների թըվին վերահսկելու բնական ֆակտորներից մեկն է: Ոմանք ոչնչանում են ուրիշ առյուծների հետ մղած կռվում կամ անհաջող գոմշաորսի ժամանակ: Ոմանք ոչնչանում են հիվանդություններից: Առյուծներին ծուղակ են գցում որսագողերը, սպանում են որսորդները: Եվ չնայած դրան, Սերենգետիի առյուծները համեմատաբար ապահով են: Պարկում ապրում են այնքան առյուծ, որքան թույլ են տալիս գոյության պայմանները:*

*Սերենգետիում ապրում են միլիոնից ավելի բազմապիսի կճղակավոր կենդանիներ: Դա ահռելի քանակ է, իսկ առյուծների թիվը հազարի է հասնում: Առաջին հայացքից թվում է, թե գազանների արքան կարող էր թվով ավելին լինել: Սակայն առյուծները հիմնականում նստակյաց կյանք են վարում, իսկ կճղակավորներից շատերը քոչվոր են: Այդ պատճառով առյուծների մեծ մասը, այդ կենդանիների մսով սնվելու հնարավորությունից զրկվում է և իր գոյությունը պահպանում է միայն նրանցով, որոնք չեն քոչում այլ շրջաններ, իսկ արգելանոցում դրանք զգալիորեն քիչ են:*

*Ինչպես մյուս գիշատիչներին, առյուծներին նույնպես հաճախ դատապարտում են այն վնասի համար, որ իբրև պատճառում են նրանք Սերենգետիի կենդանական աշխարհին: Սակայն իզուր: Առյուծները*

կությամբ տնկանյութ են մթերում:

Բազմաթիվ են Հայաստանում տարածված հազվագյուտ դեղաբույսերը: Դրանք հնուց ի վեր օգտագործվում են ժողովրդական բժշկության մեջ և սահմանափակ են: Այդ տեսակներից պետք է հատկապես նշել լոշտակը (բրիոնիա), շնամեռուկը (քենդիր), շիկատակը (բելադոննա, մահամորմ), կապառը և այլն:

Հազվագյուտ և անհետացող բույսերի պահպանման գործում մեծ է մեր հանրապետության դպրոցականների դերը: Անհրաժեշտ է լավ ճանաչել այդ բույսերը և պահպանել դրանք:

Մեր հանրապետության բոլոր դպրոցներում պետք է կազմակերպել հազվագյուտ և անհետացող բույսերի պահպանության ջոկատներ: Ամեն մի դպրոցական լավ պետք է ճանաչի իրենց շրջանում հանդիպող արժեքավոր հազվագյուտ բույսերը և ամեն կերպ նպաստի դրանց պահպանմանը: «Պիոներ» ամսագրի խմբագրությունում ստեղծվել է «Անհետացող և հազվագյուտ բույսերի պահպանության շտաբ»: Ամսագրի էջերում այսուհետև պարբերաբար հաղորդումներ կտպագրվեն անհետացող բույսերի մասին, կնշվեն այն վայրերը, որտեղ դրանք հանդիպում են, մեթոդական ցուցումներ կտրվեն դրանց հայտնաբերման ու պահպանման մասին: Պատանի բնասերներն էլ իրենց հերթին պետք է փնտրեն, գտնեն նման հազվագյուտ տեսակների բուսուտները, այդ մասին տեղեկություններ ուղարկեն խմբագրություն և ամեն կերպ նըպաստեն դրանց պահպանման գործին:



*վայրի կենդանիներին որսալով՝ օգնում են սահմանել հսկողություն նրանց քանակի վրա: Այլապես նրանք այնքան կբազմանան, որ կամայացնեն ողջ արոտավայրերը և իրենք էլ անխուսափելիորեն կոչնչանան քաղցից: Առյուծները թագավորում են ոչ ի վնաս Սերենգետիի մյուս կենդանական աշխարհի, այլ իբրև նրա անբաժանելի և անհրաժեշտ մասը:*

*Առյուծների բնույթը լի է հակասություններով: Նա դյուրագրգիռ է և չար, ծույլ և եսամոլ: Միաժամանակ նա կարող է լինել հեզաբարո և քնքուշ: Ոմանք դատապարտում են առյուծին նրա դաժանության և լեշ ուտելու սովորության համար, ուրիշները հիանում են նրա գեղեցկությամբ և ուժով: Ես չեմ բաժանում դրանցից ոչ մեկի կարծիքը: Ես սիրում եմ առյուծին հենց այնպես, ինչպիսին որ է նա:*




Լույս է տեսնում 1928 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1975 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*




«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05145:- Պատվեր 185: Տպաքանակ՝ 81700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 28 II 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ.
ԻՆԴԵՔՍ 77806

